տինկ, որ անհետացած է, կը փնտռուի անգլ. իշխանութեանց կողմէ: Ձերբակալման հրամանագիր մը հրատարակուեցաւ:

ՀԱՄԱՅՆԱՎԱՐ ԿՈՒՍԱԿՑՈՒԹԵԱՆ վարիչները գաղտնի ժողով մը գումարեցին առջի օր, կասեցնելու համար անդամներու նուազումը որ կը շարունակուի ատենէ մը ի վեր: Միենոյն ատեն միջոցներ ձեռք պիտի առնուին Մարթիի կուսակիցներուն դէմ: «Իւմանիթէ» ամէն օր մերկացումներ կը կատարէ Սեւ Ծովու երբեմնի հերոսին դէմ, «ոստիկանական գործակալ» անուանելով զայն: Միւս ամբաստանեալին, Թիյոնի արտաքսումն ալ անխուսափելի կը համարուի: Կուսակցութեան քարտուղարներէն Կիյօ կը հաստատէ թէ փարիզեան շրջանի անդամներուն թիւը, որ 86,000 էր 1949ին, 74,000ի իջած էր 1951ին:

ԱՆԳԼԻՈՅ արտ. եւ ելմտ. նախարարները Ուաշինկթըն հասան առջի օր: Պիտի ջանան խոհեմութիւն թելադրել՝ Ասիոյ մէջ: Պիտի բացատրեն թէ ինչո՞ւ չեն կըրնար մասնակցիլ եւրոպական բանակին: Տնտեսական գետնի վրայ, պիտի փորձեն իջեցնել մաքսատուրքերը, բարձրացնել ոսկիին գինը եւն.:

ՏՈՒՐՔԵՐՈՒ յայտարարութեան պայմանաժամը պաշտօնապէս երկարաձգուեցաւ մինչեւ Մարտ 5, միայն անհատներու համար:

ՖՐԱՆՍԱՅԻ ԵՒ ԻՏԱԼԻՈՅ միջեւ կարգ մը պայմանագիրներ պիտի ստորագրուին, իբրեւ հետեւանք Պինէյի եւ տէ Կասփերիի տեսակցութեանց: Գլխաւոր խնդիրներէն մէկն է դիւրացնել իտալացի աշխատաւորներու մուտքը Ֆրանսա: Որոշուած է նաեւ փապուղի մը շինել Մոն Պլանի տակ եւն.:

ՍՈՒԷԶԻ վէճին կարգադրութիւնը կախում ունի Միջին Արեւելքի պաշտպանութեան ծրագրէն, ինչպէս կը յիշեցնեն թերթերը: Անգլիա կը շարունակէ բանակցիլ Մ. Նահանգներուն, Ֆրանսայի եւ Թուրքիոյ հետ, այդ պաշտպանութիւնը կազմակերպելու համար, գործակցութեան հրաւիրելով Եգիպտոսը:

---

ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ.— Հ. Յ. Դ. Պոմոնի «Զաւարեան» ենթակոմիտէն իր խորին ցաւակցութիւնները կը յայտնէ ընկեր Թադէոս Գըլըճեանի, իր մօրը մահուան առթիւ:

ՄԱՐՍԷՅԼ.— Աղքատախնամ–Որբախնամ Միութեան վիճակախաղէն շահած են հետեւեալ թիւերը. 8, 123, 162, 203, 302, 356, 383, 405, 423, 444, 465, 484, 492, 514, 517, 541, 544, 577, 583, 647, 703, 712: Դիմել Պ. Յ. Փափազեանի, 3 ռիւ Լաֆայէթ, ստանալու համար:

---

ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ.— Տէր եւ Տիկ. Տաճատ Տողրամաճեան, ինչպէս նաեւ Տողրամաճեան, Վարդանեան եւ Խօզպէքեան ընտանիքները շնորհակալութիւն կը յայտնեն բոլոր անոնց որոնք անձամբ, ծաղկեպսակով, նամակով եւ բարենպատակ նուէրներով ցաւակցութիւն յայտնեցին իրենց սիրելի զաւակին, վաղամեռիկ ՄԻՀՐԱՆԻԿԻ մահուան առթիւ:

ՖՐ. Կ. ԽԱՉԻ Առնուվիլի մասնաճիւղը շնորհակալութեամբ ստացած է 1000 ֆր. Պ. Միսաք Փափազեանէ, (Ալֆորվիլ), ողբացեալ ՕՆՆԻԿ ՖԷՍՃԵԱՆԻ մահուան առթիւ:

ԻՍԻԻ ԽՐԻՄԵԱՆ ԴՊՐՈՑԻ հոգաբարձութիւնը Օր. Էլիզապէթ Տէմիրճեանի եւ Պ. Արշակ Էքշիեանի ամուսնութեան առթիւ շնորհակալութեամբ ստացած է հետեւեալ նուէրները.— Երիտասարդ զոյգէն 2000 ֆր., Տիկին Տէմիրճեանէ 1000 ֆր., Տէր եւ Տիկին Գարաքէլեանէ 1000, Տէր եւ Տիկին Քէլէշեանէ 5000, Պ. Պէօրծակեանէ 500 ֆր.:

# ՓԵՏՐՈՒԱՐ 18

ԻՍԻԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. «Զաւարեան» Կոմիտէի եւ մասնակցութեամբ Ֆ. Կ. Խաչի, Նոր Սերունդի եւ դպրոցի հոգաբարձութեան, այս կիրակի կէսօրէ ետք ժամը 3,30էն մինչեւ կէս գիշեր, Խըրիմեան դպրոցին մէջ: Կը նախագահէ ընկեր ԽԱԶԻԿ ՄԿՐՏԻՉԵԱՆ, կը խօսի ընկեր ԱՇՈՏ ԻՍԱՀԱԿԵԱՆ:

## ԿԱՐԴԱՑԷՔ ԵՒ ՏԱՐԱԾԵՑԷՔ

## PREUVES

Ֆրանսերէն ամսագիր գրականութեան, գիտութեան եւ արուեստներու: Թիւ 24 (Փետր.): Կ՚աշխատակցին միջազգային յայտնի դէմքեր:

Տարեկան բաժնեգին Ֆրանսա 1200 ֆր., արտասահման 1500 ֆրանք:

Հասցէ.— 41 Ave. Montaigne, Paris (8).

---



# ՅՈՒՇԱՏԵՏՐ

## ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻ ՁԵՌՆԱՐԿՆԵՐԸ

Սալ ժան ժոռէս վոտէյի մէջ

Պանիէօի մէջ, Նոր Սերունդը կազմակերպած է դասախօսութիւն մը, այս երկուշաբթի ժամը 20,30ին: Պիտի դասախօսէ Պ. ԹՈՐՈՍԵԱՆ: Նիւթը՝ «Առաջին Համաշխարհային պատերազմը եւ հայկական հարցը»: Կը հրաւիրուին բարեկամները, համակիրները եւ երիտասարդները:

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Նոր Սերունդի «Ահարոնեան» խումբի դասախօսութիւնը՝ այս հինգշաբթի ժամը 21,30ին Ազգ. Տան մէջ, 32 ռիւ տը Թռէվիզ, մէթրօ Քատէ: Կը խօսի ընկ. ՀՐԱՆԴ ԲԱԼՈՒԵԱՆ: Նիւթը՝ «Զուարթնոց եկեղեցին»:

Մուտքը ազատ է բոլոր երիտասարդներուն: Հայերէնի դասերը ժամը ճիշդ 20ին:

## Հ. Յ. Դ. Թանգարան

Շնորհակալութեամբ ստացանք, իրենց այցելութեան առթիւ.— Տիկին Տ. Սերենկիւլեանէ 2000 ֆր., Տիկ. Ա. Փափազեանէ 5 տոլար, Պ. Մարգարեանէ եւ Տ. Ազնաւուրեանէ 500ական ֆրանք:

Վարչութիւն

---

## 22-րդ Տարեկան Ցերեկոյթ

ՀԱՅ ԱՐԻՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԵԱՆ ՓԱՐԻԶԻ ՇՐՋԱՆԻ ԱՐԵՆՈՒՇՆԵՐՈՒՆ ԵՒ ԱՐԻՆԵՐՈՒՆ ԿՈՂՄԷ

Կիրակի 8 Մարտ կէսօրէ վերջ ժամը 2.30ին

Salle de la Chimie, 28bis Rue St. Dominique

Métro Solférino կամ Invalides

Կը մասնակցին Ֆրանսական սկաուտական միութիւնները եւ Փարիզի օտար սկաուտական խումբերը: Արիները պիտի ներկայացնեն սկաուտական միջազգային կեանքէ կենդանի պատկերներ, երգեր եւ պարեր:

Մոգական լապտերով պիտի ներկայացուին տեսարաններ միութեան 1952ի գործունէութեան մասին:

Արենոյշները կը ներկայացնեն հայկական պարերու եւ գեղջկական տեսարաններու նոր շարքը:

Մասնաւոր պատրաստութեամբ պիտի ներկայացուի նաեւ Մոլիէռի «Երեւակայական հիւանդը» Արիներու եւ Արենոյշներու կողմէ::

Մուտք 200 եւ 300 ֆր.: ՊԻՒՖԷ:

---




Le Gérant : A. NERCESSIAN

Imprimerie DER AGOPIAN, 17 rue Damesme, Paris (13)

գրահապատ կառքերով:

Սպարապետ զօր. Պահարմատի հա-մար կ'ըսեն թէ Շահին կ'այցելէր, երբ ամբոխը յարձակեցաւ Տօքթ. Մոսատեղի բնակարանին վրայ: Իրեն յաջորդեց զօր. Ռիահի, իսկ Թեհրանի ոստիկանութեան վերատեսուչ նշանակուեցաւ զօր. Աֆշար-տուս: Շահին կուսակիցները իրենց ու-սերուն վրայ առին պաշտօնանկ վերատե-սուչը, զօր. Ամինին, «կեցցէ՛ Շահը, անկ-ցին դաւաճանները» աղաղակներով:

Նոյն օրը ոստիկանութիւնը կրակ բացաւ օդին մէջ, ցրուելով խումբ մը կարմիրներ որոնք թշնամական ցոյցեր կատարեցին Շահին դէմ:

ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՎՃԱՐՈՎԻ ԱՐՁԱԿՈՒՐԴԸ դիւրացը-նելու համար, որոշուեցաւ կարգ մը բարե-փոխումներ կատարել: Ժողովրդական տմսակներու պայմանաժամը երկու ամի-սէն բարձրացած է երեքի: Այս շարքին պատկանող բանուորները եւ իրենց ընտա-նիքները պիտի կրնան երկու խումբերով ճամբորդել, մեկնած կամ վերադարձած ատեն: Այս բարեփոխումը կը գործադըր-ուի մարտ 1էն սկսեալ:

ՓԱՐԻԶԻ ՀԱՄԱՅՆԱՎԱՐՆԵՐՈՒ ի-րիկուան օրաթերթը, «Սը Սուար» դադ-րեցուց իր հրատարակութիւն մարտ 1ին, «ցտեսութիւն» ըսելով: Լոնտոնի «Տէյլի Մէյլ»ը, որ 1906էն ի վեր Եւրոպայի յա-տուկ տպագրութիւն մը ունէր Փարիզի մէջ, նոյնպէս դադրեցուց այս յաւելուա-ծը: Թերթը Լոնտոնէն պիտի ղրկուի օդա-նաւով:

ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ.— Փարիզէն ընկեր-ներ Ղ. Գապաքճեան, Արմ. Յակոբեան եւ Մ. Կազանեան իրենց խորին ցաւակցու-թիւնը կը յայտնեն ՅԱԿՈԲ ՋԱԼՐՔԵԱՆԻ (Սէն Շամոն) մահուան առթիւ, Տէր եւ Տիկին Յ. Աճէմեանին եւ զաւակներուն (Լասիոթա) եւ ընտանեկան պարագանե-րուն: Այս առթիւ փոխան ծաղկեպսակի 1000 Ֆր. կը նուիրեն «Յառաջ»ի տարած-ման:

× Սէնթ Էթիէնէն Տէր եւ Տիկին Խա-չիկ Երեմեան եւ Տէր եւ Տիկին Պօղոս Երեմեան իրենց խորին ցաւակցութիւննե-րը կը յայտնեն իրենց կնքահօր եւ կնքա-մօր՝ Տէր եւ Տիկին Թադէոս Թորոսեանի իրենց եղբօրորդւոյն 27 տարեկան ՕՆՆԻԿԻ սխուր մահուան առթիւ որ տեղի ունեցած է Պուլկարիոյ մէջ:

× Ֆր. Կ. Խաչի Սէնթ Մարկրիթի մասնաճիւղը իր ցաւակցութիւնը կը յայտնէ ընկեր եւ ընկերուհի Կարապետ Տօնապետեանի, Տէր եւ Տիկին Յ. Ստե-փանեանի իրենց սիրեցեալ մօր եւ ազգա-կանին ԱՅՐԻ ՏԻԿԻՆ ԹՈՒՐՖԱՆՏԱ ՏՕ-ՆԱՊԵՏԵԱՆԻ մահուան առթիւ:

ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ.— Ողբացեալ Մինաս Ալթունեանի մահուան առթիւ փո-խան ծաղկեպսակի Ֆր. Կապոյտ Խաչի Պանիէօ-Բաշանի մասնաճիւղին կը նուի-րեն՝ Տէր եւ Տիկին Գալֆայեան 400 եւ Տէր եւ Տիկին Ա. Իսահակեան 500 Ֆրանք:

ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ.— Մարսէյլի Ազգա-տախնամ-Որբախնամ Միութեան վար-չութիւնը իր խորին շնորհակալութիւննե-րը կը յայտնէ Տիկ. Դաւիթեանի, Տիկ. Վէմեանի եւ Օր. Զէքէմեանի որոնք ամ-բողջ երկու օր վարչութեան անդամներուն հետ ջանացին օգտակար հանդիսանալ Միութեանս վիճակախաղի տոմսերու սպառման համար:

Միութիւնը շնորհակալութեամբ ստա-ցած է Այրի Տիկին Յ. Կարապետեանէ՝ իր ամուսնոյն եւ եղբօրը յիշատակին հինգ հազար ֆրանք:

## ՌԱԶՄԻԿՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԵՆԷՆ

Հայ Ռազմիկներու եւ Կամաւորներու Միութեան վարչութիւնը կը հրաւիրէ հայ ընտանիքները եւ բոլոր անոնք որ 1914–18 եւ 1939-45ի պատերազմներու ընթացքին պատուոյ դաշտին վրայ մեռեալներ ունե-ցած են, անոնց անունները հաղորդել Միութեան կեդրոնը, 31 ռիւ Սէն Լազար Բարիզ (9), որպէսզի արձանագրուին Պատուոյ Մատեանին մէջ:

Կը խնդրենք նոյնպէս բոլոր հայ ռազ-միկներէն որ մեզ ուղարկեն իրենց ռազմի-կի, վիրաւորի կամ զին. քաջագործու-թեան փաստաթուղթերու վաւերացեալ պատճէնները (քօբի քօնֆորմ), օգտուելու համար այն առաւելութիւններէն որոնց ի-րաւունք կուտան իրենց մատուցած ծառա-յութիւնները:



## ԹՈՒՇԱՏԵՏՐ

ՓԱՐԻԶ.— Հ. Ց. Դ. Նոր Սերունդի «Ահարոնեան» խումբի դասախօսութիւնը՝ այս հինգշաբթի ժամը 21,30ին Ազգ. Տան մէջ, 32 ռիւ տը Թռեվիզ, մէթրօ Քատէ: Կը խօսի ընկ. ՀՐԱՆԴ ԲԱԼՈՒԵԱՆ: Նիւ-թը՝ «Զուարթնոց եկեղեցին»:

Մուտքը ազատ է բոլոր երիտասարդ-ներուն: Հայերէնի դասերը ժամը ճիշդ 20ին:

ՓԱՐԻԶ.— Հ. Ց. Դ. Արեւմտեան Եւ-րոպայի Ուսանող. Միութեան ժողովը այս Չորեքշ. ժամը 8,30ին, սովորական հաւա-քատեղին:

ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆԻՆ շաբաթա-կան հաւաքոյթը այս Չորեքշ. երեկոյ, ժամը 9ին, Քատէ սրճարանին վերնայար-կը: Կը խօսի Պ. Ռուբէն ԹԱԴԷՈՍԵԱՆ: Նիւթ՝ «Ազգ. փոքրամասնութիւնները ցա-րական Ռուսիոյ մէջ»: Մուտքը ազատ է:

ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ԵՐԵԿՈՅԹ

Նախաձեռնութեամբ Սէն Շամոնի Հ. Ց. Դ. Նոր Սերունդի «Վարդգէս» խում-բին, այս շաբաթ ժամը 20,30ին, Հայ Կա-թողիկէներու սրահը, ռիւ տը լա Պոռս: Մասնակցութեամբ Հ. Ց. Դ. «Վարուժան» Կոմիտէի, Կ. Խաչի եւ միջին Ֆրանսայի Նոր Սերունդի խումբերուն:



Le Gérant : A. NERCESSIAN
Imprimerie DER AGOPIAN, 17 rue Damesme, Paris (13)

# ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆԸ

Տարակոյս չկայ, որ կարեւոր նիւթական միջոցներով հարուստ կազմակերպութիւն մըն է Բարեգործականը:

Ստեղծուած էր ան, շուրջ կէս դար առաջ, (1906ին), Եգիպտոսի մէջ, ազգային դեր մը կատարելու համար մեր բազմակարօտ ժողովուրդին կեանքին մէջ, իր դժուարին օրերուն: Բարի ու ազնիւ դեր մը, անխտրական ոգիով:

Իր հիմնադիրները, որոնց մէջ մեծանուն հայեր ալ կային, ուզեցին համազգային, ընդհանրական կազմակերպութիւն մը դարձնել զայն, բարիք սփռելու համար բոլորին: Ատոր համար ալ կոչեցին զայն՝ Հայ Բարեգործական Ընդհանուր Միութիւն:

Քանի մը տասնեակ տարիներու գործունէութենէ ետք, կրնա՞նք ըսել, որ ան ճշմարտօրէն ծառայած է իր սկզբնական նպատակներուն: Դարձած է «ընդհանուր» Միութիւն մը: Մէկը կրնա՞յ վկայել, որ ան ազգային, համազգային ու հարազատ կազմակերպութիւն մը եղած է իր գործունէութեամբ ու ոգիով:

Իր համակիրները, իր անդամներէն շատերն իսկ չեն կրնար այս վկայութիւնը տալ, իրենց ձեռքը դնելով իրենց խղճին վրայ:

Իրականին մէջ, Բարեգործականը վէճի ու պառակտումի դեր մը կատարած է, կռթնած՝ իր նիւթական լայն միջոցներուն, իր կանոնագրական դիտաւորեալ ու արգելիչ յօդուածներուն եւ, մանաւանդ իր կազմակերպական մեքենային փարած շահադէտներուն:

Անշուշտ, կան մարդիկ իր ղեկավարութեան մէջ, որոնք կը հաւատան դեռ կազմակերպութեան նպատակներուն: Կան բարեմիտ անձեր, որոնք գիտակցաբար թէ անգիտակցաբար, աչք կը գոցեն նիւթական, վարչական ու բարոյական չարաշահութիւններու վրայ, այնպէս մտածելով՝ թէ բարիքը աւելի շատ է, քան չարիքը:

Կը սխալին սակայն անոնք, որովհետեւ հանրային կազմակերպութեան մը նպատակը ուրիշ բան է, իսկ գործադրութիւնը՝ բոլորովին ուրիշ: Չի բաւեր բարի, ազգային նպատակներ ունենալ: Չի բաւեր կանոնագրական գեղեցիկ նախատեսութիւններ որդեգրել, եթէ գործը, եթէ անոնց իրականացման միջոցները համապատասխան չեն հետապնդուած նպատակներուն: Եթէ նպատակին ու իրականութեան միջեւ կը պակսի ներդաշնակութիւնը:

Բարեգործականի դժբախտութիւնը, սկիզբէն ի վեր եղած է այն, որ հակասած է իր անունին ու նպատակներուն, իր գործունէութեամբը: Իր գործերը հերքած են, յաճախ, իր բարեգործութիւնը. իր կողմնակալութիւնը, խտրական ոգին ուրացած են «ընդհանուր միութիւն» կոչումը: Բարեգործականը, իրականին մէջ, դարձած է ազգին մէջ՝ անջատ խմբակցութիւն մը. կարգ մը անձերու եւ շրջանակներու արտայայտութիւնը: Պահպանողական տարրերու միջավայրը, ուր տեղաւորուած են ո՛չ միայն ճշմարտօրէն, պահպանողական տարրերը, այլ եւ յետադիմականները, հակակուսակցական մտայնութեան տէր անձերը: Այս իրողութեան հետ ալ պիտի հաշտուէինք, եթէ սակայն Բարեգործականը դառնար միայն պահպանողականութեան կազմակերպութիւնը. պահպանողական մտածողութեան միջնաբերդը:

Այդպէս չէ սակայն, տխուր իրողութիւնը:

Իրողութիւնը այն է, որ իր շրջանակէն ներս մակաղած են նաեւ կուսակցական որոշ հաշիւներ ու նկատումներ ունեցող տարրերը: Կրնանք ըսել՝ ամբողջ կուսակցութիւն մը, որ Ռամկավար Կուսակցութիւն կը կոչուի, ուխտեալ թշնամի Դաշնակցութեան, որուն դէմ պայքարելու համար ծնունդ առած է, իր ղեկավարութեան կողմէ իսկ խոստովանուած: Եթէ այդ «կուսակցութիւն» կոչուած կազմակերպութիւնը Բարեգործականի շրջանակէն ներս, ծառայէր Բարեգործականի ընդհանուր նպատակներուն, նորէն պիտի չունենայինք ըսելիք: Դժբախտաբար, այդպէս ալ չէ: Ռամկավար կուսակցութիւնը, Բարեգործականէն ներս կամ անոր շուրջը, շահագործած է Բարեգործականի նիւթական ու բարոյական միջոցները, իր սեփական հաշիւները մաքրելու համար:

Տեղ տեղ, ինչպէս Եգիպտոս ու Յունաստան, շատ ուշ արթնցան վարիչները եւ շատ դժուարաւ կրցան իրենց օձիքը ազատել Ռամկավար ղեկավարութեան ձեռքէն:

Ընդհանուր կերպով, սակայն, կացութիւնը կը մնայ նոյնը: Այն տարբերութեամբ միայն, որ Բարեգործականը, շատ մը տեղերու մէջ (Լիբանան, Սուրիա, Պաղեստին, ինչպէս հոս, Ամերիկա), կրաւորական վիճակէն դուրս եկած, դարձած է պայքարող կազմակերպութիւն մը, ձեռք ձեռքի Ռամկավար կամ «Յառաջդիմական», այսինքն՝ յետադիմական, այսինքն՝ համայնավար բախտախնդիրներուն ու անոնց կազմակերպութիւններուն հետ:

Ունեցանք տխուր փորձառութիւնը հոս իսկ, երբ Բարեգործականը միացեալ ճակատ կազմեց Ռամկավար – Հնչակ- Համայնավար, Ազգ. Խորհուրդ կոչուած խմբակներուն հետ, պայքար մղելու համար Դաշնակցութեան ու անոր գաղափարակից կազմակերպութեանց դէմ, գործնապէս: Պայքարեցաւ՝ իր խօսքովն ու գործովը, իր կոչերովն ու մասնաճիւղերու գործունէութեամբը, իր գործակցութեամբ կասկածելի բոլոր տարրերուն հետ եւ իր նիւթական քաջալերութեամբը՝ բոլոր հակազգային ատելութիւններուն:

Այս տխուր գործակցութիւնը կը շարունակուի այսօր ալ, Ամերիկայէն մինչեւ Սփիւռքի հեռաւոր շրջանները, իր բարեգործութիւններուն հետ: Եւ ճիշդ այդ պատճառով ալ դարձած է ան, աւելի քան երբեք վտանգաւոր:

Բարեգործականը, կը ցաւինք ըսելու, բարեգործութեան կազմակերպութիւն մը չէ միայն այսօր, այլ եւ պայքարի ու որոշ տարրերու ձեռքը պայքարի միջոց դարձած կազմակերպութիւն մը:

Խմբագրական «Հայրենիք»ի)

## Ողջոյնի խօսքեր

### Փետրուար 18ի առթիւ

ՆԻՒ ԵՈՐՔ, 26 Փետր.— Փետրուար 18ի ապստամբութեան առիթով բազմաթիւ նահանգապետներ, ծերակուտականներ, Երեսփ. Ժողովի անդամներ եւ ուրիշ ամերիկեան ականաւոր դէմքեր իրենց շնորհաւորութեան ու քաջալերանքի խօսքն ուղղեցին հայ ժողովուրդին, յայտարարութիւններ յղելով Հայկ. Դատի Յանձնախումբին:

Փետր. 18ի օրը, «Ամերիկեան Ձայն»ը ոչ միայն հայկական այլ գրեթէ բոլոր բաժիններու մէջ մասնաւոր զեկուցումներ հաղորդեց հայ ժողովուրդի հերոսական ապստամբութեան մասին, քաղուածքներ տալով ականաւոր Ամերիկացիներու յայտարարութիւններէն:

Դարձեալ Փետր. 18ի օրը, Երեսփ. Ժողովին մէջ Էյպրըհըմ Մալթըրը, իսկ Ծերակոյտի մէջ Հոմըր Ֆըրկըսընը եւ Փետր. 20ին ծերակուտական Էվըրըթ Տըրքսընը խօսեցան հայ ժողովուրդի յանդուգն ու պատմական ձեռնարկին եւ անոր յանուն ազգային անկախութեան մղած անխոնջ պայքարին մասին: Անոնց այս ճառերը արձանագրուած են Երեսփ. Ժողովի եւ Ծերակոյտի ատենագրութեանց տոմարին մէջ:

Ահա քանի մը ամփոփումներ.—

Նիւ Եորքի նահանգապետ Թոմաս Տուիին յայտարարած է.—

« Սովետական յարձակումի առաջին զոհերէն մէկը եղաւ Հայաստանի Անկախ Հանրապետութիւնը: Խորհրդային իշխանութիւն հաստատուելէ երկու ու կէս ամիս ետք սակայն, ստրկացուած Հայաստանը ապստամբեցաւ եւ ազատեց երկիրը սովետական իշխանութենէ, անոր գաղտնի ոստիկանութենէն եւ կարմիր բանակէն: Միացեալ Նահանգներու Հայերը միշտ համոզուած են թէ արդար, ազատ ու խաղաղ աշխարհ մը հնարաւոր է միայն այն պարագային, երբ բովանդակ մարդկութիւնը կը նուիրուի Ազատութեան Դատին: Այդ ազատութիւնը Հայաստանի մէջ ծնաւ 1918 Մայիս 28ին, Հայաստանի Հանրապետութեամբ, որ ճանչցուեցաւ Մ. Նահանգներուն կողմէ»:

Միչիկանի մէջ նահանգապետ Ուիլերմս, Մէյնի մէջ նահանգապետ Քրոս եւ Իլլինոյի մէջ նահանգապետ Ստրաթըն Փետր. 18ը Հայաստանի Ապստամբութեան Յիշատակի եւ աշխարհի ստրկացուած ժողովուրդներու Կարեկցութեան Օր հռչակեցին:

Մասաչիւսըթի նահանգապետ Հերթըր եւ Նիւ Ճըրզիի նահանգապետ Տրիսքըլ եւ Քալիֆորնիոյ նահանգապետի տեղակալ Նայթ շնորհաւորութեան յայտարարութիւններ ուղղեցին իրենց նահանգներու հայ համայնքներուն:

Շատ մը ծերակուտականներ նամակներ ուղղելով Հայկ. Դատի Յանձնախումբին, ջերմ համակրանքով ու գնահատանքով կը խօսին հայ ժողովուրդի յանուն ազատութեան ու անկախութեան մղած պայքարի մասին եւ պատրաստակամութիւն կը յայտնեն ծառայելու նոյն դատին:

Ծերակուտական Փօլ Տակլըս, հայ ժողովուրդի հերոսական ապստամբութեան հանդէպ իր հիացմունքն ու խոր յարգանքը յայտնելէ ետք, կ'եզրակացնէ.—

— « Այս առիթով մեր վերանորոգուած վճռականութեամբ պէտք է աշխատինք միաւորել ազատ աշխարհի ուժն ու ճիգերը համայնավար ծաւալապաշտութեան դէմ: Մենք բոլորս ջերմեռանդ հաւատքով կը սպասենք ու կը ձգտինք այն օրուան, երբ ոչ միայն հայութիւնը այլ համայնավար տիրակալութեան տակ գտնուող բոլոր ժողովուրդները, անգամ մը եւս կ'ըլլան ազատ ու անկախ»:

Իսկ ծերակուտական Թոմաս Հենինկըգ կը գրէ.—

— « Կ'ապրինք այնպիսի ժամանակաշրջան մը, երբ բախումը մեծ պետութիւններու միջեւ կրնայ շուքի տակ ձգել ճակատագիրը ուրիշ աւելի փոքր ժողովուրդներու: Աշխարհը ցնցող եւ իրար յաջորդող դէպքերը ժամանակ չեն տար տեսնելու եւ քննելու համար կացութիւնը անոնց, որոնց մասին թերթերու մէջ եօթ սիւնակնոց խորագիրներ չեն դրուիր: Ես խորապէս համոզուած եմ— որ իրերու այս վիճակը աւելի քան ցաւալի է, որովհետեւ մարդկային պատմութեան առուները չափազանց կարեւոր են մեծ գետի հոսանքը ճշդելուն մէջ: Այդ առուներէն մէկը հայ ժողովուրդի հին պայքարն է, յանդուգն ու անվհատ պայքար մը— զոր Հայերը մղած են իրենց ազգային ինքնութիւնը պահպանելու համար: Պատմութիւնը կ'ուզէր, որ հայութեան հզօր դրացիները

մասին. բայց Վիշինսկի ուղղակի չպատասխանեց:

ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՔՈՐԷԱՅԻ ՊԱՏԵՐԱԶՄԸ դադրեցնելու համար չորս միջոցներ կը տեսնէ զօր. Պրէտլի, Մ. Նահանգներու միացեալ սպայակոյտին նախագահը.— 1. Լքել Քորէան, «միջոց մը զոր ոչ ամերիկացի ժողովուրդը, ոչ ալ դաշնակիցները պիտի ընդունին».— 2. Շարունակել պատերազմը, առաւելագոյն կորուստները պատճառելով հակառակորդին եւ նուազագոյն չափին իջեցնելով դաշնակիցներու կորուստները.— 3. Աւելցնել ճնշումը Քորէայի ճակատին վրայ, միշտ պատրաստ ըլլալով ի հարկին կարգ մը ձեռնարկներ կատարելու.— 4. Մէկ կամ աւելի միջոցներ ձեռք առնել վճռական ելքի մը յանգելու համար, ընդունելով հանդերձ որ այդ պարագային կրնանք պատերազմի բռնուիլ Չինաստանի հետ եւ փութացնել Գ. աշխարհամարտը:

ԵՒՐՈՊԱՅԻ ՊԱՇՏՊԱՆՈՒԹԵԱՆ մասին Ֆրանսա կարգ մը առաջարկներ ներկայացուցած էր Անգլիոյ: Այս վերջինը պատասխանած է յուշագրով մը, պատճէնը ուղղելով միւս հինգ պետութեանց: Մանրամասնութիւնները գաղտնի կը պահուին. բայց լրագիրներ կը հաւաստեն թէ պատասխանը ամբողջովին գոհացում չի տար Ֆրանսայի: Բոլըն Ուոշինկթընի մէջ ալ պիտի խորհրդակցի այս մասին: Լոնտոն այս առթիւ ալ դիտել կուտայ թէ իր արտաքին հոգերուն պատճառով չի կրնար աւելի լայն յանձնառութիւններ ստանձնել Եւրոպայի մէջ:

ՃԱՓՈՆԻ վարչապետը, Եոշիտա, «բթամիտ ապուշ» կոչած էր ընկերվարական երեսփոխան մը, երբ լուսաբանութիւններ կը պահանջէր արտաքին գործերու մասին: Ամբողջ ժողովը իրար անցաւ: Եոշիտա ներողութիւն խնդրեց, բայց անօգուտ: Ժողովը 162ի դէմ 191 ձայնով որոշեց կարգապահական ատեանի մը յանձնել վարչապետը: Հաւանական է որ հրաժարի:

53 ԿԱՐՄԻՐՆԵՐ ՁԵՐԲԱԿԱԼՈՒԵՑԱՆ Գահիրէի մէջ, Բշ. օր: Թերթերը կը գրեն թէ երեւան հանուած է Եգիպտոսի ամենամեծ գաղտնի կազմակերպութիւնը: Խուզարկութիւններ տեղի ունեցան միաժամանակ Գահիրէի եւ հիւս. շրջանին մէջ, ոստիկանութեան եւ բանակի մասնաւոր կազմակերպութեանց կողմէ: Քառասուն հոգի ձերբակալուեցան միայն Գահիրէի մէջ, երբ ոստիկանութիւնը պաշարեց համայնավար կուսակցութեան կեդրոնը, որ կը գտնուէր մեծ շէնքի մը գետնայարկը: Գաղտնի սենեակի մը մէջ գտնուեցան թռուցիկներ եւ տպարան մը:

ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ.— Շաւիլի հայ դպրոցի վարչութիւնը շնորհակալութեամբ ստացած է հետեւեալ նուէրները փոխան ծաղկեպսակի, վաղամեռիկ ՄԻՀՐԱՆԻԿ ՏՈՂՐԱՄԱՃԵԱՆԻ յիշատակին.—

Տէր եւ Տիկին Գր. Կիւլեան, Տէր եւ Տիկին Մովսէս Տէմիրճեան, Տէր եւ Տիկին Պատրիկ Պետեան, Տէր եւ Տիկին Օհաննէս Գրիգորեան հազարական, Տէր եւ Տիկին Օննիկ Տէմիրճեան, Տէր եւ Տիկին Պարոնեան Սիրուն, Տիկին Սարգիս Փայլուն 500ական, Փարիզէն Տէր եւ Տիկին Թագւորեան Յակոբ 1000, իսկ Շաւիլի եկեղեցիին համար 1000 ֆրանք:

× Շաւիլէն Տէր եւ Տիկին Պետրոս Սարգիսեան 1000 Ֆր. կը նուիրեն տեղւոյն դպրոցին, փոխան ծաղկեպսակի, իրենց մօրեղբօր ՕՆՆԻԿ ՖԻՍՃԵԱՆԻ մահուան առթիւ:

× Սարսէլ Սէն Պրիւէն Տէր եւ Տիկին Լեւոն Գանթարճեան 1000 Ֆր. կը նուիրեն Այնճարի «Յառաջ» վարժարանին, իրենց մօրեղբօր Պ. ՕՆՆԻԿ ՖԻՍՃԵԱՆԻ մահուան առթիւ:

## Փետրուար 18ը

ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Մարսէյլի Շրջ. Կոմիտէին, մասնակցութեամբ ենթակոմիտէներուն եւ խումբերուն, Նոր Սերունդի շրջ. վարչութեան եւ շրջանի խումբերուն, Ֆր. Կապոյտ Խաչի մասնաճիւղերուն:

Շաբաթ 14 Մարտ, ժամը 9ին, Սալ Մագընոյի մէջ: Կը խօսին ընկ. ՍԱՀԱԿ ՏԷՐ ԹՈՎՄԱՍԵԱՆ եւ Համազգայինի Մարսէյլի մասնաճիւղին կողմէ Պ. ԿԱՐԱՊԵՏ ՓՕԼԱՏԵԱՆ

## ՌԱԶՄԻԿՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԵՆԷՆ

Հայ Ռազմիկներու եւ Կամաւորներու Միութեան վարչութիւնը կը հրաւիրէ հայ ընտանիքները եւ բոլոր անոնք որ 1914–18 եւ 1939-45ի պատերազմներու ընթացքին պատուոյ դաշտին վրայ մեռեալներ ունեցած են, անոնց անունները հաղորդել Միութեան կեդրոնը, 31 ռիւ Սէն Լազար Բարիզ (9), որպէսզի արձանագրուին Պատուոյ Մատեանին մէջ:

Կը խնդրենք նոյնպէս բոլոր հայ ռազմիկներէն որ մեզ ուղարկեն իրենց ռազմիկի, վիրաւորի կամ զին. քաջագործութեան փաստաթուղթերու վաւերացեալ պատճէնները (քօբի քօնֆորմ), օգտուելու համար այն առաւելութիւններէն որոնց իրաւունք կուտան իրենց մատուցած ծառայութիւնները:

## Գեղարուեստական երեկոյթ

Ի ՊԱՏԻՒ «ՀԱՅ-ԲՈՅԺ» ԱՄՍԱԹԵՐԹԻՆ

16 Մայիս, Շաբաթ երեկոյ, Թէաթր տ'Իէնա, Պ. Աշոտ Մալաքեան կը ներկայացնէ իր շարժանկարներէն մին ի ներկայութեան Ֆրանսացի արուեստագէտներու: Մանրամասնութիւնները մօտ օրէն:

## Աչքերնիդ լոյս

ՎԱԼԱՆՍ.— Բացած ենք մսավաճառի նոր եւ արդիական կարգուսարքով խանութ մը, 24 ռիւ Պուֆիէ:

Պիտի գտնէք ամէն տեսակի թարմ միսեր: Մէկ անգամ այցելողը պիտի դառնայ տեւական յաճախորդ:

Պ. ԿՕՇԿԱՐԵԱՆ





## ՑՈՒՑԱՏԵՏՐ

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Նոր Սերունդի «Ահարոնեան» խումբի դասախօսութիւնը՝ այս հինգշաբթի ժամը 21,30ին Ազգ. Տան մէջ, 32 ռիւ տը Թրեվիզ, մէթրօ Քատէ: Կը խօսի ընկ. ՀՐԱՆԴ ԲԱԼՈՒԵԱՆ: Նիւթը՝ «Զուարթնոց եկեղեցին»:

Մուտքը ազատ է բոլոր երիտասարդներուն: Հայերէնի դասերը ժամը ճիշդ 20ին:

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Արեւմտեան Եւրոպայի Ուսանող. Միութեան ժողովը այս Չորեքշ. ժամը 8,30ին, սովորական հաւաքատեղին:

ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆԻՆ շաբաթական հաւաքոյթը այս Չորեքշ. երեկոյ, ժամը 9ին, Քատէ սրճարանին վերնայարկը: Կը խօսի Պ. Ռուբէն ԹԱԴԷՈՍԵԱՆ: Նիւթ՝ «Ազգ. փոքրամասնութիւնները ցարական Ռուսիոյ մէջ»: Մուտքը ազատ է:

## ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ԵՐԵԿՈՅԹ

Նախաձեռնութեամբ Սէն Շամոնի Հ. Յ. Դ. Նոր Սերունդի «Վարդգէս» խումբին, այս շաբաթ ժամը 20,30ին, Հայ Կաթողիկէներու սրահը, ռիւ տը լա Պոռս: Մասնակցութեամբ Հ. Յ. Դ. «Վարուժան» Կոմիտէի, Կ. Խաչի եւ միջին Ֆրանսայի Նոր Սերունդի խումբերուն:

## 22-րդ Տարեկան Ցերեկոյթ

ՀԱՅ ԱՐԻՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԵԱՆ ՓԱՐԻԶԻ ՇՐՋԱՆԻ ԱՐԵՆՈՅՇՆԵՐՈՒՆ ԵՒ ԱՐԻՆԵՐՈՒՆ ԿՈՂՄԷ

Կիրակի 8 Մարտ կէսօրէ վերջ ժամը 2.30ին

Salle de la Chimie, 28bis Rue St. Dominique

Métro Solférino կամ Invalides

Կը մասնակցին Ֆրանսական սկաուտական միութիւնները եւ Փարիզի օտար սկաուտ խումբերը: Արիները պիտի ներկայացնեն սկաուտական միջազգային կեանքէ կենդանի պատկերներ, երգեր եւ պարեր:

Մոգական լապտերով պիտի ներկայացուին տեսարաններ միութեան 1952ի գործունէութեան մասին:

Արենոյշները կը ներկայացնեն հայկական պարերու եւ գեղջկական տեսարաններու նոր շարքը:

Մասնաւոր պատրաստութեամբ պիտի ներկայացուի նաեւ Մոլիէրի «Երեւակայական Հիւանդը» Արիներու եւ Արենոյշներու կողմէ::

Մուտք 200 եւ 300 ֆր.: ԳԻՒՏԷ:





Le Gérant : A. NERCESSIAN

Imprimerie DER AGOPIAN, 17 rue Damesme, Paris (13)

ժեց Ռուսերը, հրեայ ժողովուրդին դէմ սարքուած հալածանքներուն համար»։

Արեւմտեան երկիրներէն պատուիրակներ ճամբայ ելած են դէպի Մոսկուա։ — Ուաշինկթընի խորհրդային դեսպանատունը պարահանդէս մը կուտար, երբ ծանուցուեցաւ Սթալինի հիւանդութիւնը։

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ԹԵՀՐԱՆԷՆ կը հեռագրեն թէ Տոքթ. Մոսատեղ կատարելապէս տէրն է կացութեան։ Այս առթիւ ըսաւ, — «Այլեւս պէտք չունիմ վստահութեան քուէի, վասնզի բոլոր երեսփոխանները վստահութիւն ունին իմ վրայ»։ Կառավարական թերթը կը գրէ թէ վարչապետը այժմ կը սպասէ որ վերջ գտնեն պալատական դաւերը, այլապէս հանրաքուէ մը պիտի սարքէ։ Կարմիրները նոր ցոյց մը սարքեր էին, բայց ոստիկանութիւնը ցրուեց։ Խանութները վերաբացուած են։ Խորհրդարան ապաստանած 28 երեսփոխաններն ալ իրենց տուները վերադարձան։

ՔՐՈՒՓ 300 միլիոն մարք (30 միլիառ ֆրանք) հատուցում պիտի ստանայ, ծախելով իր ամբողջ ստացուածքը։

ՔՈՐԷԱՅԻ պատերազմը կրնանք շահիլ առանց կուիւը տարածելու, ըսաւ ամերիկեան նախկին հրամանատարը, զօր. Ֆլիթ, Երեսփ. ժողովին առջեւ։

ՖՐԱՆՍԱՅԻ ՎԱՐՉԱՊԵՏԸ եւ արտաքին նախարարը Ուաշինկթըն պիտի երթան Մարտ 24ին։

ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ.— Օր. Զապէլ Քէօսէեան շնորհակալութիւն կը յայտնէ բոլոր անոնց որոնք անձամբ կամ գրաւոր ցաւակցութիւն յայտնեցին իր հօր՝ ՀՐԱՆԴ ՔԷՕՍԷԵԱՆԻ մահուան առթիւ։

## ԲԱՐԵԿԱՄԱԿԱՆ ՄԵԾ ՄՐՑՈՒՄ

Փարիզի Հ. Մ. Մ. Մուլուտիա Գլիւպ տը Բառիի դէմ, այս կիրակի, Պահեստի ժամը 14ին, Ա. ժամը 15,30ին, Սթատ Ժօֆրուա տը Լօրն, 37 ռիւ տը լա Քուքթիւռ տ'Օքսէր, Ժընըվիլիէ։

Փութ տը Քլիշիէն առնել 140 թիւ օթոպիւսը եւ իջնել Փլաս տէ Պուրկինեոն, 139 իջնել Ռիւ Գամիլինա, էկլիզ Սէն Տընիէն թիւ 178 եւ իջնել Ռիւ Քուլթիւռ տ'Օքսէր։ Նոյն թիւ օթոպիւսով Գուրպըվուայէն, իջնել նոյն փողոցը։





## Տարեկան պարահանդէս

ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ ՊՈՒԼՎԱՌ ՕՏՏՕ ՄՃ.ԻՆ

Այս շաբաթ ժամը 20էն մինչեւ 1, Էնթէռնասիոնալի սրահին մէջ, Շըմէն տը լա Մատրակ-Վիլ։

Գեղարուեստական խնամուած բաժին, երգ, արտասանութիւն եւ անակընկալներ։ Հայկ. եւ եւրոպական պարերուն համար կը նուագէ Ս. ՉԷՕՐԷՔՃԵԱՆ նուագախումբը։

## ԳԻՆԵՁՕՆ Ի ՊԱՏԻՒ Պր. Տ ԹԷՔԷԵԱՆԻ

Այս կիրակի կէսօրէ վերջ ժամը 3-8, Մարսիլիոյ Քօլպէռ սրահին մէջ։ Գեղարուեստական ընտիր բաժին։

Կ'երգեն ՏԻԿ. ՄԱՌԻ ՆԱԳԳԱՇԵԱՆ (Վիեննայի Պետական Երաժշտանոցէն), ընկերակցութեամբ Օրիորդ ԱԿԻՆԵԱՆԻ, եւ ՏԻԿ. ՄՕՐԸՆՕՆ։ Կ'արտասանեն՝ ՏԻԿ. ՎԵՀ. ՎԱՐԴԵՐԵՍԵԱՆ եւ ՕՐ. ՍԵԴԱ ՄԻՍԹԻՔ։ Ջութակ՝ Պ. Ս. ՉԷՕՐԷՔՃԵԱՆԷ, ընկերակցութեամբ իր աղջկան (դաշնակ)։

Կը հրաւիրենք Մարսիլիոյ, Նիսի, Քանի, Լիոնի, Տեսինի, Վիէնի, Կրընոպլի եւ Փարիզի ընկերները, անդամատետրերով։ (Դիւան)

Հայկական պար եւն. Արիներու եւ Արենոյշներու կողմէ։

## ԹԱՏԵՐԱԿԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

ՍԱԼ տ'ԻԷՆԱ, 10 Ավընիւ տ'Իէնա

Մէթրօ Իէնա

Երկուշաբթի 23 Մարտ ժամը 20,30ին

Դերասան Աւետիս ՄԻՍԻՐԵԱՆ կը ներկայացնէ

«Քօրրասօ»

կամ՝ «Ոճրագործին ընտանիքը», տրամ 5 արար (Ճիագոմէթթիի)։

Կը մասնակցին՝ Ա. Գմբէթեան, Օր. Հ. Խըտըշեան, Ն. Մարգարեան, Բ. Հապէշեան, Ն. Պշտիկեան եւ Օր. Ճանճիկեան։ Բեմադրութիւն՝ Ա. Գմբէթեան, բեմավար՝ Վաղինակ Ալթունեան, իսկ դիմայարդարումը յանձնուած է սինեմայի հանրածանօթ դիմայարդար Պ. Յ. Առէքելեանի։։ Գիները դիւրամատչելի։

Տոմսերուն համար դիմել Ա. ՄԻՍԻՐԵԱՆԻ՝ 99 ռիւ տիւ Բուան տիւ Ժուռ, Պուլոներ (Սէն)։ Հեռաձայն՝ Սանթրալ 28-56, ժամը 18էն 19ը։

ՖՐ. Կ. ԽԱՉԻ Պուլվար Օտտոյի մասնաճիւղը շնորհակալութեամբ ստացած է հետեւեալ գումարները, Տէր եւ Տիկին ընկերուհի Յովակիմեանի աղջկան հարսանիքին առթիւ (14 Փետր.).—

Կնքահայրը՝ Մուշեղ Մելիքեան 2000, Տէր եւ Տիկին Յովակիմեան եւ իր տղան՝ 1500, Շահինեան, Վալանսէն, քեռայրը՝ 1000, Տէրտէրեան քեռայրը՝ 500, Տիկին Պատասարեան (տղուն մայրը) 1000, Աւետիսեան 500, Յովակիմեան Ոսկիան 500 ֆր.։ Ընդհ. գումար՝ 7000 ֆրանք։



## ՑՈՒՑԱՏԵՏՐ

ՓԱՐԻԶ.—Հ. Յ. Դ. «Աղբիւր Սերոբ» եւ «Մկրտիչ Եօթնեղբայրեան» խումբի ընդհ. ժողովը՝ այս շաբաթ ժամը 20,30ին։ Սովորական հաւաքատեղին։ Կարեւոր օրակարգ։ Ներկայանալ անդամատետրերով։

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Պելվիլի «Ռոստոմ» խումբի ժողովը՝ այս կիրակի առաւօտ ժամը 10ին, ընկ. Մանուկի բնակարանը։

ՇԱՒԻԼ.— Հ. Յ. Դ. «Արղութեան» խումբի ժողովը այս շաբաթ, ժամը 21ին, սովորական հաւաքատեղին (շար. նախորդ ժողովին)։ Ներկայ կ'ըլլան Շ. Կ.ի եւ Կ. Կ.ի ներկայացուցիչները։

ՄԱՐՍԷՅԼ.— Սէնթ Անթուանի «Ընկեր Կարօ» ենթակոմիտէի ընդհ. ժողովը՝ այս կիրակի կէս օրէն վերջ ժամը 2,30ին, ընկեր Սուքիասեանի բնակարանին մէջ։ Խիստ կարեւոր օրակարգ։

ՄԱՐՍԷՅԼ.— Համազգային Միութեան ընդհ. ժողովը շաբաթ 7 Մարտ ժամը 21ին Քաֆէ Նօայի սրահին մէջ։ Օրակարգ.— Զեկուցում եւ ընտրութիւն նոր վարչութեան։

«ԱԶԱՏ ՀԱՅԱՍՏԱՆ»ի ժողովը այս կիրակի, ժամը 14,30ին, Քաֆէ Րէժանի վերնայարկը, 70 Ռիւ Լաֆայէթ, Մէթրօ Քատէ։ Սիրով կը հրաւիրուին բոլոր վերջին տարագիրները։

## ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ԵՐԵԿՈՅԹ

Նախաձեռնութեամբ Սէն Շամոնի Հ. Յ. Դ. Նոր Սերունդի «Վարդգէս» խումբին, այս շաբաթ ժամը 20,30ին, Հայ Կաթողիկէներու սրահը, ռիւ տը լա Գառ։ Մասնակցութեամբ Հ. Յ. Դ. «Վարուժան» Կոմիտէի, Կ. Խաչի եւ միջին Ֆրանսայի Նոր Սերունդի խումբերուն։

## 22-րդ Տարեկան Ցերեկոյթ

ՀԱՅ ԱՐԻՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԵԱՆ ՓԱՐԻԶԻ ՇՐՋԱՆԻ ԱՐԵՆՈՅՇՆԵՐՈՒՆ ԵՒ ԱՐԻՆԵՐՈՒՆ ԿՈՂՄԷ

Կիրակի 8 Մարտ կէսօրէ վերջ ժամը 2.30ին

Salle de la Chimie, 28bis Rue St. Dominique

Métro Solférino կամ Invalides

Կը մասնակցին ֆրանսական սկաուտական միութիւնները եւ Փարիզի օտար սկաուտական խումբերը։ Արիները պիտի ներկայացնեն սկաուտական միջազգային կեանքէ կենդանի պատկերներ, երգեր եւ պարեր։

Մոգական լապտերով պիտի ներկայացուին տեսարաններ միութեան 1952ի գործունէութեան մասին։

Արենոյշները կը ներկայացնեն հայկական պարերու եւ գեղջկական [illegible]։

Մասնաւոր պատրաստութեամբ պիտի ներկայացուի նաեւ Մոլիէռի «Երեւակայական հիւանդը» Արիներու եւ Արենոյշներու կողմէ։։

Մուտք 200 եւ 300 ֆր.։ ՊԻՒՖԷ։




Le Gérant : A. NERCESSIAN
Imprimerie DER AGOPIAN, 17 rue Damesme, Paris (13)

րուք մը դրած, պայթուցիկներով բեռնաւորուած, 1907 Յունիս 13ին ռումբ մը նետեց ճիշդ այն պահուն երբ կարաւանը կ'անցնէր Թիֆլիսէն: Յիսուն հոգի զոհուեցան, բայց Սթալին 341,000 րուբլի թռցնելով ղրկեց Լենինի եւ ինք Բագու ապաստանեցաւ:

Յառաջիկային կը ներկայացնենք իր կեանքն ու գործը. մանաւանդ այն օրէն ի վեր որ դարձաւ «Արեւ–Սթալին», ահ ու սարսափի աննախընթաց շրջան մը բանալով Ռուսիոյ եւ ամբողջ աշխարհի ազգերուն մէջ:

Ինչպէս դիտել կուտայ տեղական թերթ մը, Սթալինի անունը վախ եւ ատելութիւն կը պատճառէր վերջին պատերազմէն ի վեր»: Ոչ մէկ դիկտատոր եղած է այնքան անողոք եւ սանձարձակ: Ինքն էր որ դնդակահարել տուաւ իր բոլոր գործակիցները, իրմէ շատ աւելի կարող դէմքեր, նոյն սարսափը տարածելով Խ. Միութեան բոլոր երկրամասերուն, ինչպէս եւ արբանեակ երկիրներուն մէջ: Եւ ինքն էր որ հաւաքական յաղթանակէն վերջ դարձաւ ոխերիմ թշնամի արեւմտեան պետութեանց, «պաղ պատերազմ» սարքելով:

Իր մահացու թշնամին, Թրոցքի, զոր աքսորել եւ յետոյ սպաննել տուաւ Մեքսիկայի մէջ, առիթով մը կ'ըսէր.– «Սթալին մեր կուսակցութեան ամէնէն ականաւոր միջակութիւնն է»:

Կասկածոտ էր եւ ծածկամիտ: Ոեւէ մէկուն հետ խօսած ատեն կը պահէր իր մտածումը: Ոչ մէկը գիտէր թէ որո՛ւ կը վստահի իրրեւ իր յաջորդը: Գործի մարդ էր, եւ բացարձակ հպատակութիւն կը պահանջէր: Խտրութիւն չէր դներ միջոցներու մէջ, իր նպատակին հասնելու համար:

Միջազգային մամուլը կը շարունակէ դուշակութիւններ կատարել իր ժառանգութեան մասին: Հետզհետէ կը հաստատուի թէ վարչապետութիւնը պիտի վարէ Մոլոթով, կուսակցութեան ընդհ. քարտուղարութիւնը՝ Մալենքով, իսկ զին. թեւը մառեշալ Բուլկանին: Ամէն պարագայի մէջ, եռապետութիւն, այս կամ այն ձեւով:

## ԲԱՐԵԿԱՄԱԿԱՆ ՄԵԾ ՄՐՑՈՒՄ

Փարիզի Հ. Մ. Մ. Մուլուտիա Գլիւպ տը Բառիի դէմ ,այս կիրակի, Պահեստի՝ ժամը 14ին, Ա. ժամը 15,30ին, Սթատ Ժօֆրուա տը Լօրն, 37 ռիւ տը լա Քութիւռ տ'Օէսէր, Ժընըվիլիէ:

Փոխ. տը Քլիշիէն առնել 140 թիւ օթոպիւսը եւ իջնել Փլաս տէ Պուրկինեօն, 139 իջնել Ռիւ Գամիլինա, Էկլիզ Սէն Տընիէն թիւ 178 եւ իջնել Ռիւ Քութիւռ տ'Օքսէր: Նոյն թիւ օթոպիւսով Գուրպըվուայէն, իջնել նոյն փողոցը:



## Տարեկան պարահանդէս

ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ ՊՈՒԼՎԱՌ ՕՏՏՕ ՄԺ.ԻՆ

Այս շաբաթ ժամը 20էն մինչեւ 1, Էնթէռնասիոնալի սրահին մէջ, Շըմէն տը լա Մատըակ–Վիլ:

Գեղարուեստական խնամուած բաժին, երգ, արտասանութիւն եւ անակնկալներ: Հայկ. եւ եւրոպական պարերուն համար կը նուագէ Ս. ՉԷՕՐԷՔՃԵԱՆ նուագախումբը:

## ԳԻՆԵՁՕՆ Ի ՊԱՏԻՒ Գր. Տ ԹԷՔԷԵԱՆԻ

Այս կիրակի կէսօրէ վերջ ժամը 3–8, Մարսիլլիոյ Քօլպէռ սրահին մէջ: Գեղարուեստական ընտիր բաժին:

Կ'երգէն ՏԻԿ. ՄԱՌԻ ՆԱԳԳԱՇԵԱՆ (Վիեննայի Պետական Երաժշտանոցէն), ընկերակցութեամբ Օրիորդ ԱԿԻՆԵԱՆԻ, եւ ՏԻԿ. ՄՕՐԼՆՕՆ: Կ'արտասանեն՝ ՏԻԿ. ՎԵՀ. ՎԱՐԴԵՐԵՍԵԱՆ եւ ՕՐ. ՍԵԴԱ ՄԻՍԹԻՔ: Ջութակ՝ Պ. Ս. ՉԷՕՐԷՔՃԵԱՆԷ, ընկերակցութեամբ իր աղջկան (դաշնակ):

Հայկական պար եւն. Արիներու եւ Արենոյշներու կողմէ:

ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ.– Վալպարէլի (Մարսէյլ) դպրոցի հոգաբարձութիւնը իր ցաւակցութիւնը կը յայտնէ քարտուղար ընկ. Ա. Գօլիկեանի եւ իր ընտանեկան պարագաներուն, իր մօր՝ ՏԻԿ. ԱՂԱՒՆԻ ԳՕԼԻԿԵԱՆԻ մահուան առթիւ:

Նոյն տխուր առթիւ Հ. Յ. Դ. «Արամ» խումբը իր ցաւակցութիւնը կը յայտնէ ընկերներ Ա. եւ Կ. Գօլիկեանի եւ փոխան ծաղկեպսակի կը նուիրէ 1000 Ֆր. Կ. Խաչին, 1000 Ֆր. դպրոցին եւ 500 Ֆր. «Յառաջ»ի տարածման ֆոնտին:

## ՄԱՆԿԱԿԱՆ ԾԻՏԵԱԼ ՑԵՐԵԿՈՅԹ

կազմակերպուած՝ Որբերու Օգնութեան Մարմնի կողմէ (Փարիզահայ Տիկնանց Միութիւն), հովանաւորութեամբ Տէր եւ Տիկին ՎԱՀՐԱՄ ՊԱՐԿԻՐՃԵԱՆԻ, կիրակի, 15 Մարտ ժամը 15–22, Ժան Կուժոնի սրահին մէջ (8 ռիւ Ժան Կուժոն, Բարիզ (8): ԹԻՔ Է ԹՕՔ նշանաւոր քլունները կը ներկայացնեն իրենց ամենավերջին խեղկատակութիւնները:

Օրիորդներ՝ Ժաքլին Պէրպէրեան եւ Իվէթ Տիւսանսթէլ կը վարեն մանկական զանազան խաղեր:

Տոմսերու համար դիմել Միութեան անդամուհիներուն եւ մեր կեդրոնը, Փարիզի Հայոց եկեղեցին, 15 ռիւ Ժան Կուժոն: Մուտք 500 ֆրանք (թէյով մը եւ կարկանդակով):



## ՑՈՒՑԱՏԵՏՐ

ՄԱՐՍԷՅԼ.– Հ. Յ. Դ. Շրջ. Կոմիտէն ժողովի կը հրաւիրէ շաբաթ գիշեր ժամը 7,30ին, Նիսի Գէօրգ Զավուշ, ժամը 8,30 Ավինիօնի Մուրատ, եւ կիրակի՝ ժամը 3ին Կարտանի Նիկոլ Դուման խումբերը:

ՓԱՐԻԶ.–Հ. Յ. Դ. «Աղբիւր Սերոբ» եւ «Մկրտիչ Եօթնեղբայրեան» խումբի ընդհ. ժողովը՝ այս շաբաթ ժամը 20,30ին: Սովորական հաւաքատեղին: Կարեւոր օրակարգ: Ներկայանալ անդամատոմսով:

ՓԱՐԻԶ.– Հ. Յ. Դ. Գեւվէյի «Ռոստոմ» խումբի ժողովը՝ այս կիրակի առաւօտ ժամը 10ին, ընկ. Մանուկի բնակարանը:

ՇԱՒԻԼ.– Հ. Յ. Դ. «Արդարութեան» խումբի ժողովը այս շաբաթ, ժամը 21ին, սովորական հաւաքատեղին (շար. նախորդ ժողովին): Ներկայ կ'ըլլան Տ. Կ.ի եւ Կ. Կ.ի ներկայացուցիչները:

ՄԱՐՍԷՅԼ.— Սէնթ Անթուանի «Ընկեր Կարօ» ենթակոմիտէի ընդհ. ժողովը՝ այս կիրակի կէսօրէն վերջ ժամը 2,30ին, ընկեր Սուքիասեանի բնակարանին մէջ: Խիստ կարեւոր օրակարգ:

ՄԱՐՍԷՅԼ.– Համազգային Միութեան ընդհ. ժողովը շաբաթ 7 Մարտ ժամը 21ին Քաֆէ Նօայի սրահին մէջ: Օրակարգ.– Զեկուցում եւ ընտրութիւն նոր վարչութեան:

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ.– Հ. Յ. Դ. Աղբիւր Սերոբ եւ Մկրտիչ Եօթնեղբայրեան խումբի ընկերահամակրական տարեկան խնջոյքը՝ Մարտ 21ին:

ՊԵԼՎԻԼԻ Հ. Յ. Դ. Ռոստոմ խումբի խնջոյքը՝ Մարտ 15ին, կիրակի կէսօրէ վերջ:

«ԱԶԱՏ ՀԱՅԱՍՏԱՆ»ի ժողովը այս կիրակի, ժամը 14,30ին, Քաֆէ Րէժանի վերնայարկը, 70 Ռիւ Լաֆայէթ, Մէթրօ Քատէ: Սիրով կը հրաւիրուին բոլոր վերջին տարագիրները:

## ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ԵՐԵԿՈՅԹ

Նախաձեռնութեամբ Սէն Շամոնի Հ. Յ. Դ. Նոր Սերունդի «Վարդգէս» խումբին, այս շաբաթ ժամը 20,30ին, Հայ Կաթողիկէներու սրահը, ռիւ տը լա Պաէս: Մասնակցութեամբ Հ. Յ. Դ. «Վարուժան» Կոմիտէի, Կ. Խաչի եւ միջին Ֆրանսայի Նոր Սերունդի խումբերուն:

## 22-րդ Տարեկան Ցերեկոյթ

ՀԱՅ ԱՐԻՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԵԱՆ ՓԱՐԻԶԻ ՇՐՋԱՆԻ ԱՐԵՆՈՅՇՆԵՐՈՒՆ ԵՒ ԱՐԻՆԵՐՈՒՆ ԿՈՂՄԷ

Կիրակի 8 Մարտ կէսօրէ վերջ ժամը 2.30ին

Salle de la Chimie, 28bis Rue St. Dominique

Métro Solférino կամ Invalides

Մուտք 200 եւ 300 Ֆր.: Գինէն:



Le Gérant : A. HERCESSIAN

Imprimerie DER AGOPIAN, 17 rue Damesme, Paris (13)

նովի եւ Անտրեյեւի հետ: Յետոյ, 1941ին, խօսեցաւ հռչակաւոր ճառը որուն համար կ՚ըսեն թէ Ստալին ինք ներշնչած էր:

Երբ Հիթլէր Խ. Միութեան վրայ յարձակեցաւ 1941 Յունիսին, Մալենքով զին. գերագոյն խորհուրդին հինգ անդամներէն մէկն էր: Յետոյ նշանակուեցաւ տնօրէն օդանաւային արտադրութեանց: 1943ի ամառը, երբ կարմիր բանակը շահեցաւ Քուրսքի վճռական ճակատամարտը, մեծ մասով շնորհիւ օդանաւային ուժին եւ պատերազմին ընթացքը փոխուեցաւ, Մալենքով նշանակուեցաւ վերատեսուչ ազատագրուած հողերու վերաշինութեան, Կովկասէն մինչեւ Սեւ Ծով եւ աւելի անդին, տարածութիւն մը 88 միլիոն բնակչութեամբ: Այս հսկայական գործին մէջ ալ ցոյց կուտար նոյն անողոք վերաբերումը:

Իբրեւ բոլշեւիկ աւելի իրատես մըն է քան ուղղափառ: Դուրսը շատ բան չեն գիտեր իր անհատական կեանքի մասին: Ամուսնացած է եւ կինը, Լենա Ռուբցովա, պաշտօնեայ է Կեդր. Կոմիտէին մէջ: Երբեք կնոջ մը հետ չերեւար հրապարակային ժողովներու մէջ: Մոսկուայի օտար դեսպաններն ալ նոր պիտի ճանչնան զինքը:

X ԺԹ. համագումարին մէջ, իր զեկուցումը ներկայացնելով, Մալենքով հետեւեալ ձեւով կ՚ամփոփէր կուսակցութեան ուղեգիծը.—

Շարունակել պայքարը նոր պատերազմի մը պատրաստութեան դէմ.— Ամրապնդել բարեկամութիւնը Չինաստանի եւ ժողովրդական հանրապետութեանց հետ.— Ամրապնդել խորհրդային ժողովուրդներու քաղաքական եւ բարոյական միութիւնը.— Առաւելագոյն չափով զօրացնել կարգապահութիւնը կուսակցութեան եւ պետութեան հանդէպ.— Հեռացնել անոնք որ անպէտ են, յետամնաց կամ անպարկեշտ.— Եւ վերջապէս առաւելագոյն չափով զօրացնել խորհրդային բանակը, նաւատորմիղը, օդատորմիղը եւ տեղեկատու օրկանները:

ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ԱԶԳ. ԺՈՂՈՎԻՆ մէջ տեղեկութիւններ հաղորդեց արտ. նախարարը, Պ. Պիտօ, Լոնտոնի եւ Հռոմի մէջ կատարուած բանակցութեանց մասին: Իր տպաւորութիւնը այն է թէ Անգլիա չուզեր միանալ եւրոպական բանակին: Հռոմի մէջ ալ որեւէ որոշում չէ տրուած եւ ամբողջ խնդիրը պիտի քննուի լայնօրէն: «Կ՚ուզենք որ Եւրոպան կազմուի առանց կազմալուծելու Ֆրանսան»:

ԱԼՊԱՆԻՈՅ կացութեան մասին հակասական լուրեր կը շրջին քանի մը օրէ ի վեր: Բանակը, ոստիկանութիւնը եւ կուսակցութեան շարքերը շարժման մէջ դրուած են, զսպելու համար ապստամբական շարժումները: Մոսկուայի անթելը կ՚ըսէ թէ խռովութիւնները զսպուած են: Եուկոսլաւիա հասած փախստականներ կը պատմեն թէ հրոսակային կռիւները տեղի կ՚ունենան հիւս. Ալպանիոյ մէջ:

ՅՈԲԵԼԵԱՆ
Հ. ՍԱՀԱԿ ՎՐԴ. ՏԷՐ ՄՈՎՍԷՍԵԱՆԻ

Մուրատ Ռափայէլեան Նախկին Աշակերտաց Միութիւնը կը հրաւիրէ հայ հասարակութիւնը յոբելեարին դաստիարակչական յիսնամեակի եւ Ս. Մուրատեան վարժարանին տեսչութեան 25ամեակին նուիրուած հանդէսին, որ տեղի պիտի ունենայ Կիրակի 22 Մարտ, ժամը 16ին, Սեւրի Ս. Մուրատեան վարժարանին թատերասրահին մէջ 26 ռիւ Թրուայօն, Մէթրօ՝ փոն տը Սեվռը:

# Փետրուար 18ը

## ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Մարսէյլի Շրջ. Կոմիտէին, մասնակցութեամբ ենթակոմիտէներուն եւ խումբերուն, Նոր Սերունդի շրջ. վարչութեան եւ շրջանի խումբերուն, Ֆր. Կապոյտ Խաչի մասնաճիւղերուն:

Շաբաթ 14 Մարտ, ժամը 9ին, Սալ Մազընոյի մէջ: Կը խօսին ընկ. ՍԱՀԱԿ ՏԷՐ ԹՈՎՄԱՍԵԱՆ եւ Համազգայինի Մարսէյլի մասնաճիւղին կողմէ Պ. ԿԱՐԱՊԵՏ ՓՕԼԱՏԵԱՆ

## ԹԱՏԵՐԱԿԱՆ ԲԱՑԱՌԻԿ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

ՍԱԼ տ՚ԻԷՆԱ, 10 Ավընիւ տ՚Իէնա
Մէթրօ Իէնա
Երկուշաբթի 23 Մարտ ժամը 20,30ին
Դերասան Աւետիս ՄԻՍԻՐԵԱՆ կը ներկայացնէ

« ՔՕՐԹԱՍՕ »

կամ՝ «Ոճրագործին ընտանիքը», տրամ 5 արար (Ճիագոմէթթի):

Կը մասնակցին Ա. Գմբէթեան, Օր. Հ. Խըտըշեան, Ն. Մարգարեան, Բ. Հապէշեան, Ն. Պշտիկեան եւ Օր. Ճանճիկեան: Բեմադրութիւն՝ Ա. Գմբէթեան, բեմավար՝ Վազգէն Ալթունեան, իսկ դերասանուհին յանձնուած է սիրեկայ հանրածանօթ դերասանուհի Պ. Յ. Առաքելեանի: Գիները դիւրամատչելի:

Տոմսերուն համար դիմել Ա. ՄԻՍԻՐԵԱՆԻ՝ 98 ռիւ տիւ Բուան տիւ Ժուռ, Պուլոնյ (Սէն): Հեռաձայն՝ Սանթուալ 28-56, ժամը 18էն 19ը:

## ՄԱՆԿԱԿԱՆ ԾՊՏԵԱԼ ՑԵՐԵԿՈՅԹ

կազմակերպուած՝ Որբերու Օգնութեան Մարմնի կողմէ (Փարիզահայ Տիկնանց Միութիւն), հովանաւորութեամբ Տէր եւ Տիկին ՎԱՀՐԱՄ ՊԱՐԿԻՐՃԵԱՆԻ, կիրակի, 15 Մարտ ժամը 15-22, Ժան Կուժոնի սրահին մէջ (8 ռիւ Ժան Կուժոն, Բարիզ (8): ԹԻՔ Է ԹՕՔ նշանաւոր քլոուները կը ներկայացնեն իրենց ամենավերջին խեղկատակութիւնները:

Օրիորդներ՝ Ժաքլին Պէրպէրեան եւ Իվէթ Տիւսաճաքէլ կը վարեն մանկական զանազան խաղեր:

Տոմսերու համար դիմել Միութեան անդամուհիներուն եւ մեր կեդրոնը, Փարիզի Հայոց եկեղեցին, 15 ռիւ Ժան Կուժոն: Մուտք 500 ֆրանք (թէյով մը եւ կարկանդակով):



# ՅՈՒՇԱՏԵՏՐ

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Պելվիլի «Ռոստոմ» խումբի ժողովը՝ այս կիրակի առաւօտ ժամը 10ին, ընկ. Մանուկի բնակարանը:

ՍԷՆԹ ԷԹԻԷՆ.— Հ. Յ. Դ. «Անտօք» ենթակոմիտէի ընդհ. ժողովը՝ այս երեքշաբթի ժամը 20,30ին, մատուռին մէջ: Կարեւոր օրակարգ:

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ Կապոյտ Խաչի Անկէնի մասնաճիւղի տարեկան ցերեկոյթ պարահանդէսը Մարտ 22ին:

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ.— Հ. Յ. Դ. Աղբիւր Սերոբ եւ Մկրտիչ Եօթնեղբայրեան խումբի ընկերահամակրական տարեկան խընջոյքը՝ Մարտ 21ին:

ՊԵԼՎԻԼԻ Հ. Յ. Դ. Ռոստոմ խումբի խնջոյքը՝ Մարտ 15ին, կիրակի կէսօրէ վերջ:

## ԵՐԳԱՀԱՆԴԷՍ

ժողովրդական սիրուած երգչուհի
ԱՅՏԱ ԱՋՆԱՒՈՒՐԻ
Կիրակի 15 մարտ ժամը 17.30ին Սալ Կավօ, 45 ռիւ լա Պօէսի:

Յայտագիրը նուիրուած է Հայաստանի ժողովրդական նոր երգերու (առաջին ունկնդրութիւն Փարիզի մէջ):

Դաշնակի ընկերակցութեամբ Օր. ԱՆԺԷԼ ՏԷՐ ՆԻԶԱՄԵԱՆԻ:

Տոմսերը 100էն 600 ֆրանք:

Դիմել՝
Տիկին Ն. Պօյաճեանի, 83 ռիւ տ՚Ապուքիր
ՍԱՆդրալ 48—69
Հ. Բալըքեանի 43 ռիւ Ռիշէ ՓՐՕ. 25—46
Ավնաւուրեանի 22 ռիւ տը Նավարէն Փարի (9)



Le Gérant : A. NERCESSIAN
Imprimerie DER AGOPIAN, 17 rue Damesme, Paris (13)

արշաւը: «Կառավարութիւնը քանի մը վաշտ զինուոր ղրկեց, բայց զօրքին կէսը ըմբոստացաւ, միւսն ալ ջարդուեցաւ: Այդ պահուն էր որ հասկցան թէ ցեղախումբերը զինուած են գաղտնապէս»:

Նոյն աղբիւրին համաձայն, ժողովուրդը անօթի է Թիրանոյի մէջ եւ կ'ատէ բոլշեւիկեան կարգուսարքը: Գիւղերու հրապարակներուն վըրայ ցցուած կախաղանները եւ ամէն գիշեր լսուած հրացանաձգութիւնները ահուսարսափի մթնոլորտ մը կը ստեղծեն ուր ամենափոքր կայծը կրնայ պայթեցնել վառօդը»:

Թղթակիցը «պարզ առասպել» կը նկատէ այն կարծիքը թէ Ալպանիան ռազմակայան մըն է Խ. Միութեան համար: «Թերեւս երկու երեք ռուսական սուզանաւեր կան Վալոնայի մէջ: Այլեւս ռուս սպաներ չկան: Քաղաքային մասնաշէնքերուն տեղ ալ հետզհետէ Պուլկարներ կը տեղաւորուին: Իրականին մէջ, կը թուի թէ Խ. Միութիւնը երբեք նախատեսած չէ պահել Ալպանիան: Ընվէր Հոճան այլեւս վարկ չունի Մոսկուայի առջեւ, նոյնիսկ չհրաւիրուեցաւ Սթալինի յուղարկաւորութեան»:

X Ուրիշ աղբիւրէ մը հաղորդուած տեղեկութեանց համաձայն, Սթալինի մահուան լուրը անտարբերութեամբ ընդունուեցաւ Ալպանիոյ մէջ: Բայց մարտ 9ին, Ընվէր Հոճա ճառ մը խօսեցաւ «եւ ժողովուրդը ստիպուեցաւ ծնրադրել, հաւատարմութեան երդումը արտասանելու համար Սթալինի յիշատակին»:

---

ՎԻՇԻՆՍԿԻ, որ Նիւ Եորքէն Մոսկուա կը վերադառնայ, Հավռ հասած ատեն հետեւեալ պատասխանը տուաւ թղթակցի մը հարցումներուն. — «Խ. Միութիւնը մէկ խօսք ունի,— խաղաղութիւն եւ ամէն բան պիտի ընէ զայն պաշտպանելու համար: Խաղաղութիւնը միշտ կարելի է երբ կ'ուզեն: Խ. Միութիւնը միայն խաղաղութեան համար կ'աշխատի»:

ԻՏԱԼԻՈՅ երկաթուղիներու աշխատաւորներէն 170.000 հոգի գործադուլ հռչակեցին, առանց ամբողջովին խանգարելու երթեւեկը:

ՖԱՐՈՒՔ ԵՒ ՆԱՐԻՄԱՆ պիտի ամուսնալուծուին, ինչպէս կը հաստատեն պաշտօնական աղբիւրէ: Նախկին թագուհին Զուիցերիա գնաց, հանգստանալու համար, իսկ Ֆարուք Իտալիա կը մնայ, քովը պահելով դեռատի գահաժառանգը:

---

## ԵՐԳԱՀԱՆԴԷՍ

ժողովրդական սիրուած երգչուհի

## ԱՑՏԱ ԱՋՆԱՒՈՒՐ

Կիրակի 15 մարտ ժամը 17·30ին Սալ Կավօ, 45 Ռիւ լա Պօէսի:

Յայտագիրը նուիրուած է Հայաստանի ժողովրդական նոր երգերու (առաջին ունկնդրութիւն Փարիզի մէջ):

Դաշնակի ընկերակցութեամբ Օր. ԱՆԺԷԼ ՏԷՐ ՆԻԶԱՄԵԱՆԻ:

Տոմսերը 100էն 600 ֆրանք:

Դիմել՝

Տիկին Ն. Պօյաճեանի, 83 Ռիւ տ'Ապուքիր ՍԱՆդրալ 48—69

Հ. Բալըսեանի 43 Ռիւ Ռիշէ ՓՐՕ. 25—46

Աղնաւուրեանի 22 Ռիւ տը Նավարէն Փարի (9)

---

## ՎԱՐԴԱՆԱՆՑ ՏՕՆԸ

Կազմակերպուած՝ Պելճիքայի Հայ Ուսանողներու Միութեան եւ Երիտասարդներու Միութեան կողմէ: Հովանաւորութեամբ Գաղթային վարչութեան: Այս կիրակի ժամը 15.30ին, Պրիւսէլի «Պրիալմօն» սրահին մէջ: (11 rue Brialmont - Porte de Schaerbeek): Մուտքը ազատ է:

---

## ՃԱՄԲՈՐԴՈՒԹԻՒՆ



## Փետրուար 18ը

ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Մարսէյլի Շրջ. Կոմիտէին, մասնակցութեամբ ենթակոմիտէներուն եւ խումբերուն, Նոր Սերունդի շրջ. վարչութեան եւ շրջանի խումբերուն, Ֆր. Կապոյտ Խաչի մասնաճիւղերուն:

Շաբաթ 14 Մարտ, ժամը 9ին, Սալ Մազընոյի մէջ: Կը խօսին ընկ. ՍԱՀԱԿ ՏԷՐ ԹՈՎՄԱՍԵԱՆ եւ Համազգայինի Մարսէյլի մասնաճիւղին կողմէ Պ. ԿԱՐԱՊԵՏ ՓՕԼԱՏԵԱՆ

---

## Թէյասեղան

Ֆ. Կապ. Խաչի օրուան առթիւ Անիէռ Պուա Քոլոմպի մասնաճիւղին թէյասեղանը այս կիրակի ժամը 16ին, ընկերվարականներու սրահին մէջ, 149bis, Av. d'Argenteuil, Անիէռ:

Գեղարուեստական ճոխ բաժին:

Մուտք 100 ֆրանք:



**Le Gérant : A. NERCESSIAN**
Imprimerie DER AGOPIAN, 17 rue Damesme, Paris (13)

## ՑՈՒՑԱՏԵՏՐ

Ֆ. Կ. ԽԱՉԻ Իթալիի մասնաճիւղին ընդհ. ժողովը այս շաբաթ կէսօրէ վերջ ժամը 4ին ընկերուհի Մէնէնտեանին բնակարանը, 29 rue Michal:

ԻՍԻ.— Ֆ. Կ. Խաչի Իսիի մասնաճիւղը ընդհ. ժողովի կը հրաւիրէ անդամուհիները այս շաբաթ իրիկուն ժամը 8.30ին, Խրիմեան սրահը:

ԱԼՖՈՐՎԻԼ.— Ֆր. Կապ. Խաչի վարչութիւնը ընդհ. ժողովի կը հրաւիրէ իր անդամուհիները, այս կիրակի ժամը 15ին, ընկերուհի Ա. Դաւիթեանի բնակարանը: Ներկաներու թիւը օրինական պիտի համարուի:

ԱԼՖՈՐՎԻԼ.— Հ. Յ. Դ. Ս. Մինասեան ենթակոմիտէի ընդհ. ժողովը՝ այս շաբաթ իրիկուն ժամը 9ին, սովորական հաւաքատեղին: Կարեւոր օրակարգ:

ՎԱԼԱՆՍ.— Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այս շաբաթ ժամը 20ին: Կարեւոր օրակարգ: Պարտաւորիչ ներկայութիւն:

---

## Հանդէս-Խնճոյք

Կազմակերպուած Հ. Յ. Դ. Պէլվիլի Ռոստոմ խումբի կողմէ: Այս կիրակի ժամը 15էն 24: La Caisse d'Epargne սրահը, 32 Ave. de la Porte des Lilas, 32, (Métro Porte des Lilas):

Կը խօսի ընկերուհի ԼԻԼԷՆ ԲԻՒԶԱՆԴ

Գեղարուեստական խնամուած բաժին, երգ ընկեր Աւետիս Քիւփէլեան: Արտասանութիւն ընկերներ Արիս Գարայեան եւ Եղիազար Սերոբեան: Իսի լէ Մուլինոյի Նոր Սերունդին կողմէ կը ներկայացուի՝ Նոր Սերունդի կեանքը: Կը նուագեն ընկեր Բենօ եւ Պ. Քէսիլի (արմոնիք):

Կը նուագէ ՏՈՔԹ. ՀԱՄԲԱՐՁ:

Ճոխ պիւֆէ: Մուտքը ազատ է:

Սիրով կը հրաւիրուին ընկերներն ու համակիրները:

---

## Հ. Մ. Ը. Մ. ՄԱՐՍԷՅԼ

Տարեկան պարահանդէսը կիրակի 6 ապրիլ:
Մանրամասնութիւնները մօտ օրէն:

---

## ԴՊՐՈՑԱԿԱՆ ՀԱՆԴԷՍ ՇԱՒԻԼԻ ՄԷՋ

Շավիլի Ազգ. դպրոցին տարեկան հանդէսը այս կիրակի, ժամը 15ին, Salle des Fêtes, Rue Stalingrad: Մանկական երգեր, արտասանութիւն եւ պար: Կը հրաւիրուին ծնողներն եւ գաղութը քաջալերելու համար մեր փոքրիկները:

Մուտք՝ 100 ֆրանք:

ՇԱՒԻԼԻ Ս. Գրիգոր Լուսաւորիչ մատրան հոգաբարձութիւնը կը ծանուցանէ թէ այս կիրակի Ս. Պատարագի եւ վերջին Արեւագալի արարողութիւն պիտի կատարուի մասնակցութեամբ Փարիզէն հրաւիրեալ դպիրներու: Սկիզբ Ժամերգութեան 9, Ս. Պատարագ 10.30:

---

## ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ՍԳԱՏՕՆԸ ԼԻՈՆԻ ՄԷՋ

Ապրիլեան Եղեռնի Համազգային սգատօնը կը կատարուի Ապրիլ 19ին, կիրակի օր, ժամը 3ին, Գ. Թաղապետարանի սրահին մէջ, նախաձեռնութեամբ եւ նախագահութեամբ Լիոնի Ազգ. Միութեան Կեդր. վարչութեան, հովանաւորութեամբ երեք յարանուանութեանց հոգեւոր պետերու եւ միահամուռ մասնակցութեամբ ամբողջ գաղութին: Զինուորական նուագախումբը պիտի հնչեցնէ մահերգներ: Պիտի ըլլան աւուր պատշաճի ուղերձներ, բանախօսութիւններ եւ մեներգներ:

Այդ օրը ժամը 3—7 բոլոր հայ առեւտրական հաստատութիւնները եւ սրճարանները փակ կըմընան ի յարգանս մեր անհամար նահատակներուն:

---

## Ծախու է



---

## ՏԱՐԵՎԵՐՋԻ ՄԵԾ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

Կազմակերպուած Ալֆորվիլի ՀԱՅ ՄԱՐԶԱԿԱՆԻՆ (U. J. A.) կողմէ:

Մարտ 22ին, Կիրակի կէսօրէ վերջ ժամը 16էն 24, Salle Voltaireի մէջ, Rue Voltaire:

Նուագախումբ PANTCHITO SERRA du Cabaret Monseigneur:

Կը մասնակցի Michèle Delhaye de la Radio Գեղարուեստական բաժին, Attractions:

Ճոխ պիւֆէ Մուտք 200 ֆրանք

Charenton Ecolesէն օթօպիւս 103 իջնել Rue de l'Union:

ւաւ կուսակցութեան ձախ թեւին մէջ: Երբ հա - մայնավար բջիջ մը հաստատուեցաւ Փրակայի մէջ, խանդավառութեամբ մասնակցեցաւ, հետ - զհետէ դիրքեր գրաւելով: Եղաւ նախ վարչական տնօրէն, յետոյ խմբագիր Սլովաքիոյ Փրաւտա թերթին, 1925ին՝ անդամ կեդր. Կոմիտէի, 1929-ին՝ ընդհ. քարտուղար: Շատ չանցած դարձաւ ականաւոր դէմք մը Մոսկուայի հիմնած Կոմինտէրնին մէջ: Երբ հիթլէրական սպառնալիքը կը շեշտուէր, առաջարկեց գինակցութիւն մը կազմել Խ. Միութեան հետ: Ուժգնօրէն պայքարեցաւ Զուտէթեան շրջանի անջատողական փորձերուն եւ Միւնիխի համաձայնութեան դէմ: Քիչ մնաց պիտի ձերբակալուէր. բայց յաջողեցաւ Մոսկուա փախչիլ Փարիզի եւ Լոնտոնի ճամբով: Հիթլէրի դէմ պայքարը շարունակեց Մոսկուայէն, չեխա - կան զօրամասեր կազմելով կարմիր բանակին մէջ: Դաշնակիցներու յաղթանակէն վերջ ընտրուեցաւ կուսակցութեան նախագահ: 1946 Մայիս 26ի ընտրութեանց մէջ կարմիրները 114 աթոռ շահեցան, այնպէս որ Կոթվալտ դարձաւ պետը խորհրդարանի ամէնէն մեծ կուսակցութեան: Յունիս|ին իրեն յանձնուեցաւ դահլիճին կազմութիւնը: 1947ին բուռն պայքար մը բացուեցաւ համայնավարնե - րուն եւ միւս կուսակցութեան միջեւ: Վէճը սաստկացաւ Մարշըլի ծրագրին հետեւանքով: 1947 Յուլիս 8ին Չեխոսլովաքիա ընդունած էր մաս - նակցիլ այս ծրագրին: Կոթվալտ Մոսկուայէն հրաման մը բերաւ որ կը պահանջէր բացարձակա - պէս մերժել Մարշըլի ծրագիրը: Զորս ամիս վերջ Մոսկուա ինք ուրիշ ծրագիր մը կը պարտադրէր: Ներքին պայքարը հետզհետէ սաստկանալով, յանգեցաւ 1948 Փետրուարի պետական հարուածին, Կոթվալտ նախագահ Պենէշի կը ներկայացնէր նոր դահլիճ մը, ամբողջովին կարմիր, դուրս ձգելով նախորդ դահլիճին 13 անդամները: Այդ օրէն Չեխոսլովաքիան կը դառնար «ժողովրդական հան - րապետութիւն»: Կոթվալտ որ վարչապետ էր 1946էն ի վեր, միաձայնութեամբ ընտրուեցաւ հանրապետութեան նախագահ, իսկ երկիրը դար - ձաւ հլու հպատակ արբանեակ մը Խ. Միութեան:

Դեռ երէկուան պատմութիւն են նախագահ Պենէշի չէզոքացումը, Մազարիքի խորհրդաւոր մահը, Սլանսքիի եւ ուրիշ 11 «դաւաճաններու» կախաղանները եւն.:

Իրազեկներ կը վկայեն թէ հանգուցեալը զանգուածներու մարդն էր: Հրապոյր չունէր, բայց վստահութիւն կը ներշնչէր եւ իր ժողովրդակա - նութեան շնորհիւ էր որ վճռական դեր կատարեց տագնապալի պահերու մէջ:

## ՅՈԲԵԼԵԱՆ
## Հ. ՍԱՀԱԿ ՎՐԴ. ՏԷՐ ՄՈՎՍԷՍԵԱՆԻ

Մուրատ Ռափայէլեան Նախկին Աշակերտաց Միութիւնը կը հրաւիրէ հայ հասարակութիւնը յոբելեարին դաստիարակչա - կան յիսնամեակի եւ Ս. Մուրատեան վար - ժարանին տեսչութեան 25ամեակին նուիրուած հանդէսին, որ տեղի պիտի ունենայ Կիրակի 22 Մարտ, ժամը 16ին, Սեւրի Ս. Մուրատեան վարժարանին թատերասը - րահին մէջ 26 ռիւ Թրուայօն, Մէթրօ՝ Փօն տը Սեվռը:

---

**SALLE GAVEAU**

45 ռիւ տը լա Պոէսի

Երեքշաբթի 17 Մարտ ժամը 2ին

Ի նպաստ Հայ Արուեստի թանգարանին

Բարձր հովանաւորութեամբ կրթ. նախարար André Marieի:

Փարիզի Սենֆոնիք Ընկերակցու - թիւնը ղեկավարութեամբ ՄՈՒԻՍ ԿԻՒ - ՑԸՆԱՅԻ եւ մասնակցութեամբ դաշնա կահարուհի

**Օր. Վարուժ Ճինճեանի**

երեք քոնչերթի դաշնակի եւ նուագա - խումբի՝ Պախ, Շուման, Իւպօ:

---

## Թատերական ներկայացում

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Պոմոնի Զաւարեան ենթակոմիտէի, հովանաւորութեամբ Հ. Յ. Դ. Մարսէյլի Շրջ. կոմիտէի:

Այս շաբաթ ժամը 21ին, Ս. Սահակ Մեսրոպ սրահին մէջ:

Սէն Լուի Նոր Սերունդի Սիամանթօ թատե - րախումբը, ղեկավարութեամբ ընկ. Ղ. ՓԻԼԻԿԵԱՆԻ, կը ներկայացնէ Շիրվանզադէի լաւագոյն գործերէն՝ ՉԱՐ ՈԳԻՆ:

---

Le Gérant : A. NERCESSIAN
Imprimerie DER-AGOPIAN, 17 rue Damesme, Paris(13)

## Ընկերահամակրական խնջոյք

Հ. Յ. Դ. «Աղբիւր Սերոբ - Եօթնեղբայրեան» խումբի:

Կիրակի 22 Մարտ, ժամը 3էն մինչեւ կէս գիշեր, Սալ Bains - Doucheի մէջ, Իվրի:

Գեղարուեստական ճոխ անակնկալներ, երգ, արտասանութիւն եւն.: Դիւրամատչելի պիւֆէ:

Կը հրաւիրուին շրջակայ թաղերու ընկեր - բարեկամները ընտանիքով: Ինչպէս նաեւ քոյր միութիւնները: Մուտքը ազատ է

---

## Համազգայինի Լսարան

Հերթական դասախօսութիւնը այս ուրբաթ ժամը 9ին Café Regentի վերնայարկը:

Կը խօսի ՓՐՕՖ. ՏՈՏՈՄԵԱՆՑ: Նիւթը՝ «Հայերու դերը պատմութեան մէջ, մասնաւորապէս (Ֆրանսա եւ Ռուսիա):

---

## Ցերեկոյթ - պարահանդէս

Կազմակերպուած Կապոյտ Խաչի Անիէնի մաս - նաճիւղի կողմէ, այս կիրակի 22 Մարտ, ժամը 16էն մինչեւ կէս գիշեր, քաղաքապետարանի սրահին մէջ, 30 rue de la Libération:

Գեղարուեստական ճոխ բաժին եւ անակնկալներ, պարերը առաջնորդութեամբ ռուս. յայտնի Orchestre Balalaïkasի ազգային տարազներով, ղեկավարութեամբ՝ Vladimir Zaplskyի:

Հաղորդակց. միջոց.— Porte Chapelleէն առնել թիւ 265 autobus, երկաթուղի Gare du Nardէն ժամը 15, 16.39 եւ 17.09:

---

ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ. — Վալպառելէն (Մարսէյլ) Անդր. եւ Կարպ. Պօլիկեան ընտանիքը եւ բոլոր պարագաները, իրենց խորին շնորհակալութիւն - ները կը յայտնեն բոլոր անոնց, որոնք անձամբ, ծաղկեպսակով, նուիրատուութեամբ կամ նա - մակով ցաւակցութիւն յայտնեցին իրենց մօր՝ ողբացեալ ՏԻԿԻՆ ԱՂԱՒՆԻ ՊՕԼԻԿԵԱՆի մահուան առթիւ, որ տեղի ունեցաւ Փետր. 20ին:

---

### ԲՆԱԿԱՐԱՆ ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

Կահաւորուած կամ ոչ (երկու կամ երեք սենեակ) 4 հոգինոց ընտանիքի համար:

Դիմել թերթիս վարչութեան:

---

## ԱԼՔԱԶ ԵՒ ՈՐԴԻ
## ՏԱՆ ԱՆԱԿՆԿԱԼԸ

Երգապնակներու (տիսք) մեծ հաստատութիւնը, ԱԼՔԱԶ տօնական օրերու առթիւ հրապարակ հանած է «տիսք»երու նոր շարք մը.—

Դերասան ԳՄԲԷԹԵԱՆԻՆ 6 լաւագոյն արտա - սանութիւնները:

Նոյնպէս ՈՒՏԻ ՀՐԱՆԴԻ հայերէն եւ սօլօ աբեւելեան ոճով երգուած հեղինակութիւնները, 15 տիսք:

Նախորդ հայկ. ժող. երգերու ճոխ մթերքովը ներկայիս մեր երգացանկը բարձրացած է 75ի: Այս բոլորը կեդրոնացած պիտի գտնէք.—

1.— ԱԼՔԱԶ՝ Մարսէյլ 23 rue St. Barbe (կեդ - րոնատեղի):

HATCHERIAN Լիոն, 65 rue Dunoir:

Այս երկու կեդրոնատեղիներուն մէջ «փիկըփ» - ներ հաստատուած են: Փափաքողները կրնան ներկայանալ՝ կատարելու համար իրենց ընտրու - թիւնը:

---



## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ԼԻՈՆ. Ֆ. Կ. Խաչի վարչութիւնը ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերուհիները, այս հինգշաբթի ժամը 20.30ին, 5 rue Bonnefoi, Lyon, Յոյներու սրահը: Կարեւոր օրակարգ:

ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆԻՆ շաբաթական հաւաքոյթը այս Չորեքշաբթի երեկոյ ժամը 9ին, Քատէ սրճարանին վերնայարկը: Յայտնուած փափաքին եւ շահեկանութեան պատճառով Պ. Վ. ՉԷՅ - ԹՈՒՆՑԵԱՆ պիտի վերջացնէ իր զեկուցումը Հայկ. Հարցին մասին, մինչեւ 1913ի բարենորոգման ծրագիրը: Մուտքը ազատ է:

---

## ՆՈՒԱԳԱՀԱՆԴԷՍ
## ԳՈՀԱՐԻԿ ՂԱԶԱՐՈՍԵԱՆԻ

Սալ Շօփէն - Փլէյէլ, Մարտ 19ին հինգշաբթի իրիկուն ժամը 9ին:

ՅԱՅՏԱԳԻՐԻՆ (Bien temperé en Ré mineur) մաս կը կազմեն՝ Պախ, Փրսէլ, Քուփըրէն, Սքարլաթի, Մոցարթ, Պեթովէն, Պրամս, Լիսթ, Տըպիւսի, Շուման, Շօփէն եւ Գ. Ղազարոսեան:

---

մը պիտի ստանայ փոխադարձ Ապահովութեան Մնտուկէն :

ԴԱՀԼԻՃԸ չորս ժամ նիստ գումարեց առջի օր, քննելու համար կարգ մը ստիպողական խնդիր - ներ որոնց գլխաւորն է ամերիկեան վարկերու բաշխումը: Վարչապետը եւ արտաքին նախարարը Ուաշինկթըն պիտի երթան յառաջիկայ շաբթու. այնպէս որ խնդիրը աւելի սուր հանգամանք ըս - տացած է: Քանի մը նախարարներ կ'առաջարկեն որ Մ. Նահանգները 40 առ հարիւրէն 65 առ հարիւրի բարձրացնեն Հնդկաչինի պատերազմին համար որոշուած վարկերը, կրճատելով ուղղակի Ֆրանսայի յատկացուած բաժինը: Այս առաջար - կին հակառակ է մասնաւորապէս Պլէւօ :

ԱՐԵՒՄՏԵԱՆ ԳԵՐՄԱՆԻՈՅ երեսփ. ժողովը մարտ 18ին վաւերացուց այն պայմանագիրը ո - րուն համաձայն 22 միլիոն տոլար հատուցում պիտի վճարեն Իսրայէլի, հիթլէրական իշխանու - թեան զոհերուն համար :

ԻՐԱՆԻ կառավարութիւնը կարգ մը տեղեկու - թիւններ հաղորդեց Թեհրանի ամերիկեան դես - պանին, որ կը կարծէ թէ նորէն պիտի մերժուի անգլեւամերիկեան վերջին ծրագիրը: Վարչապե - տը ճառ մը պիտի խօսի այսօր, ուրբաթ, աւելի բացորոշ առաջարկներ պահանջելով Անգլիայէն :

ՔԱՄԶԱԹՔԱՅԻ մէջ կատարուած օդարշաւին առթիւ, Մ. Նահանգները բողոքագիր մը ուղղե - ցին Խ. Միութեան, պահանջելով պատժել յան - ցապարտ օդաչուները :

ԵՒՐՈՊԱԿԱՆ ԲԱՆԱԿԻ դաշնագրին վաւերաց- ման դէմ բացուած պայքարին առթիւ, Պ. Պինօ յեկուցում տալով ազգ. պաշտպանութեան յանձ - նաժողովին առջեւ, ըսաւ թէ ի հարկին հանրա - քուէ պէտք է կատարել, ազգին կամքը իմանալու համար: (Իր անձնական կարծիքն է ):

ԱՆԳԼԻՈՅ երեսփ. ժողովը ջնջեց պողպատի եւ երկաթի ազգայնացման օրէնքը զոր հաստա - տած էր աշխատաւորական դահլիճը :

ՄԱՐՈՔԻ ԵՒ ԹՈՒՆՈՒԶԻ կացութեան մասին նոր տեղեկագիր մը ուղղեցին արաբ եւ ասիական պետութիւնները, Ազգաժողովին :

## Համազգային Լսարան

Հերթական դասախօսութիւնը այս ուրբաթ ժամը 9ին Café Regentի վերնայարկը:

Կը խօսի ՓՐՕՖ. ՏՈՏՈՄԵԱՆՑ: Նիւթը՝ «Հայերու դերը պատմութեան մէջ, մասնաւորապէս» (Ֆրանսա եւ Ռուսիա):

### ՅՈԲԵԼԵԱՆ
### Հ. ՍԱՀԱԿ ՎՐԴ. ՏԷՐ ՄՈՎՍԷՍԵԱՆԻ

**Մուրատ Ռափայէլեան Նախկին Աշակերտաց Միութիւնը կը հրաւիրէ հայ հասարակութիւնը յոբելեարին դաստիարակչական յիսնամեակի եւ Ս. Մուրատեան վարժարանին տեսչութեան 25ամեակին նուիրուած հանդէսին, որ տեղի պիտի ունենայ Կիրակի 22 Մարտ, ժամը 16ին, Սեւրի Ս. Մուրատեան վարժարանին թատերասրահին մէջ 26 ռիւ Թրուայօն, Մէթրօ՝ Փոն տը Սեվռը:**

## Ընկերաճաշակերական խնջոյք

Հ. Ց. Դ. «Աղբիւր Սերոբ - Եօթնեղբայրեան» խումբի :

Կիրակի 22 Մարտ, ժամը 3էն մինչեւ կէս գիշեր, Սալ Bains - Doucheի մէջ, Իվրի :

Գեղարուեստական ճոխ անակնկալներ, երգ, արտասանութիւն եւն.: Դիւրամատչելի պիւֆէ :

Կը հրաւիրուին շրջակայ թաղերու ընկեր - բարեկամները ընտանիքով: Ինչպէս նաեւ քոյր միութիւնները : Մուտքը ազատ է

Այրի Տիկին Տիգրանուհի Ասլանեան, Տէր եւ Տիկին Յարութիւն Ասլանեան եւ զաւակները, Պ. Առաքել Ասլանեան, ինչպէս նաեւ բոլոր պարա - գաները ցաւով կը ծանուցանեն իրենց ամուսնոյն, հօր, մեծ հօր եւ ազգականին՝

ՅԱԿՈԲ ԱՍԼԱՆԵԱՆԻ (քանոնի)

մահը, որ տեղի ունեցաւ Մարտ 17ին, 63 տա - րեկան:

Յուղարկաւորութիւնը կը կատարուի այսօր, ուրբաթ ժամը 9.30ին, Փարիզի Հայոց եկեղեցին, 15 Rue Jean Goujon: Մեռելական թափօրը տունէն (56 Rue Julien Lacroix, Paris (20) կը մեկնի ժամը 8.45ին :

### ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Տիկին Արշակուհի Դաւիթեան կը ծանուցանէ թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի այս կիրակի, յետ պատարագի, Փարիզի Հայոց եկեղեցին, 15 Rue Jean Goujon, իր ողբացեալ տղուն՝ ՀԱՅԿ ԴԱՒԻԹԵԱՆԻ մահուան քառասուն - քին առթիւ :

## Ուշադրութիւն

« Յառաջ »ի վերհրատարակման ութերորդ շրջանը կը լրանայ յառաջիկայ ապրիլին :

Նոր տարեշրջանի համար կարգ մը փոփոխութիւններ նախատեսուած ըլլալով, կը խնդրուի մեր բոլոր բաժանորդներէն օր առաջ փակել իրենց առկախ հաշիւները:

Ապրիլ 1էն սկսեալ պիտի դադրեցնենք բոլոր անվճար թերթերուն առաքումը :

ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

## Թատերական ներկայացում

Նախաձեռնութեամբ Հ. Ց. Դ. Տէսինի կոմիտէի : Այս կիրակի կէսօրէ վերջ ժամը 3ին Հ. Ց. Դ. Տան սրահը:

Կը ներկայացուի ՍՕՍ ԵՒ ՎԱՐԴԻԹԵՐ (Պ. Պռօշեանցի օփերէթը 4 արար), ղեկավարու - թեամբ ԹՐԱԳՕՇի:



**ԹԱՏԵՐԱԿԱՆ ԲԱՑԱՌԻԿ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ**

**ՍԱԼ տ'ԻԷՆԱ, 10 Ավրնիւ տ'Իէնա**

**Մէթրօ Իէնա**

**Երկուշաբթի 23 Մարտ ժամը 20,30ին**

**Դերասան Աւետիս ՄԻՍԻՐԵԱՆ կը ներկայացնէ**

**« Քորրաdo »**



## ՑՈՒՑԱՏԵՏՐ

ՄԱՐՍԷՅԼ.— Ֆ. Կ. Խաչի Պուլվար Օտտոյի ընդհ. ժողովը այս ուրբաթ ժամը 14ին, սովորական հաւաքատեղին: Կը հրաւիրուին բոլոր ան - դամուհիները: Կարեւոր օրակարգ :

ԱԼՖՈՐՎԻԼ.— Հ. Ց. Դ. Ս. Մինասեան են - թակոմիտէի ընդհ. ժողովը՝ այս շաբաթ իրիկուն ժամը 9ին, սովորական հաւաքատեղին: Օրակարգ Շար. նախորդ ժողովի :

ՎԻԷՆ.— Հ. Ց. Դ. կոմիտէին ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները, այս շաբաթ ժամը 21ին, Օհանջանեան ակումբը: Պարտաւորիչ ներկայութիւն :

ՏԷՍԻՆ.— Ֆ. Կ. Խաչի մասնաճիւղին ընդհ. ժողովը այս շաբաթ ժամը 20.30ին, Հ. Ց. Դ. Տան ընտնայարկը: Կարեւոր օրակարգ, ընտրութիւն նոր վարչութեան: Ներկաներու թիւը մեծամաս - նութիւն պիտի համարուի :

ՊԱՆԵԷՕ ՔԱՇԱՆ.— Ֆ. Կ. Խաչի մասնաճիւղի ժողովը այս շաբաթ ժամը 16ին, ընկերուհի Վ. Հաքիմեանի տունը, 144, Av. Aristide Briand, Պան - եէօ (Seine):

ԿՐԸՆՈՊԼԸ.— Հ. Ց. Դ. Եօթնեղբայրեան են- թակոմիտէի ընդհ. ժողովը այս շաբաթ ժամը 21ին: Կարեւոր օրակարգ: Կը խնդրուի ճշդապահ ըլլալ :

## Ցերեկոյթ - պարահանդէս

### ԱՆԿԷՆԻ ՄԷՋ

Կազմակերպուած Կապոյտ Խաչի Անկէնի մաս - նաճիւղի կողմէ, այս կիրակի 22 Մարտ, ժամը 16էն մինչեւ կէս գիշեր, քաղաքապետարանի սրահին մէջ, 30 rue de la Libération:

Կը խօսի Տիկին ԷԼԼԷՆ ԲԻՒԶԱՆԴ

Գեղարուեստական ճոխ բաժին եւ անակնկալներ, պարերը առաջնորդութեամբ ռուս. յայտնի Orchestre Balalaïkasի ազգային տարազներով, ղեկավարութեամբ՝ Vladimir Zaplskyի :

Մասնակցութեամբ Պանէօյի Հ. Ց. Դ. Նոր Սերունդին, որ կը ներկայացնէ «Մեծապատիւ Մուրացկաններէն պատկեր մը: Հայկ. պարեր բեմադրութեամբ տիկին Հ. Թորոսեանի, կովկասեան պարեր Պ. Ապանիցէի կողմէ :

Հաղորդակց. միջոց.— Porte Chapelleէն առնել թիւ 265 autobus, երկաթուղի Gare du Nordէն ժամը 15, 16.39 եւ 17.09:






**Le Gérant : A. NERCESSIAN**

Imprimerie DER-AGOPIAN,17 rue Damesme ,Paris(13)


## ՏԱՐԵՎԵՐՋԻ ՄԵԾ ՊԱՐԱՀԱՆԴԵՍ

Կազմակերպուած Ալֆորվիլի ՀԱՅ ՄԱՐԶԱԿԱՆԻՆ (U. J. A.) կողմէ :

Մարտ 22ին, Կիրակի կէսօրէ վերջ ժամը 16էն 24, Salle Voltaireի մէջ, Rue Voltaire :

Նուագախումբ PANTCHITO SERRA du Cabaret Monseigneur :

Կը մասնակցի Michèle Delhaye de la Radio   Գեղարուեստական բաժին, Attractions :

Ճոխ պիւֆէ   Մուտք 200 ֆրանք

Charenton Ecolesէն օթօպիւս 103 իջնել Rue de l'Union :

## Ուրիշ կարեւոր դէպքեր

Ինչպէս գրած էինք, արեւմտեան Գերմանիոյ երեսփ. ժողովը վաւերացուց առժամեայ հաշտութեան եւ եւրոպական բանակի դաշնագիրները, մեծ գոհունակութիւն պատճառելով մասնաւորապէս Մ. Նահանգներուն մէջ :

Այս վաւերացումէն անմիջապէս վերջ, արեւելեան Գերմանիոյ խորհրդարանը բացառիկ նիստ գումարելով, որոշեց յայտարարել թէ գերման ժողովուրդը երբեք չէ կապուած այդ երկու դաշնագիրներով եւ թէ «ազգ. ազատագրութեան պայքար մը պիտի մղէ Պոնի կառավարութեան դէմ» : Միեւնոյն ատեն կ'առաջարկէ բանակցութիւններ սկսիլ չորս պետութեանց միջեւ, Գերմանիոյ միացման եւ հաշտութեան դաշնագրի մասին :

Երեսփոխանները ծափահարեցին, երբ նախագահը կարդաց այն հեռագիրները որոնք կը պահանջեն ազգ. բանակ մը կազմել արեւելեան Գերմանիոյ մէջ, «պաշտպանելու համար արեւելեան Պերլինի կառավարութեան նուաճումները արեւմտեան Գերմանիոյ նախայարձակման վտանգներուն դէմ» :

Վարչապետը, Կրոթվոլ, խօսք առնելով, «պատմական պատասխանատուութիւն» կոչեց եւրոպական բանակի դաշնագրին վաւերացումը: Եւ ըսաւ. — « Հայրենասիրական ուժերուն առաջին գործը պիտի ըլլայ տապալել Ատընաուըրի կառավարութիւնը: Մարտ 20ը կը հռչակեմ գերման ժողովուրդի ազգ. ազատագրութեան պայքարի թուականը՝ Պոնի մահուան դաշինքին դէմ »:

Խորհրդարանը որոշեց նաեւ պահանջել գերման ժողովուրդէն որ բոլոր միջոցներով խափանէ եւրոպական բանակի դաշնագրին գործադրութիւնը :

✕ Խ. Միութեան արտաքին նախարարը, Մոլոթով, հաղորդեց Պ. Իտընի թէ պիտի միջամտէ, ազատելու համար ինը Անգլիացիներ, որոնք արգելափակուած են հիւս. Քորէայի մէջ, պատերազմէն ի վեր :(Մէկը Սէուլի նախկին դեսպանը):

Այս անկանկալ միջամտութիւնը մեծ զարմանք պատճառեց, մանաւանդ որ, մէկ օր առաջ ալ, Պերլինի խորհրդային հրամանատարը՝ զօր. Չուիքով ցաւ յայտնելով անգլ. օդանաւի զոհերուն համար, կ'առաջարկէր իր անգլիացի պաշտօնակցին խորհրդակցիլ եւ միջոցներ ձեռք առնել, որպէսզի ուրիշ ատեն այսպիսի դէպքեր չպատահին :

Լաւատեսներ բարենշան կը համարեն այս երկու պարագաները, յարաբերութեանց բարւոքման համար :

## Յունաստան չի զեղչեր բանակը

Յունաստանի վարչապետը, մարեշալ Փափագոս, զեկուցում տալով երեսփ. ժողովին առջեւ, բացատրեց թէ «չի կրնար մէկ զինուոր իսկ զեղչել բանակէն» :

Այս առթիւ հետեւեալ տեղեկութիւնները հաղորդեց .— Պուլկարիա ունի 170.000 զինուոր կազմ եւ պատրաստ եւ կրնայ քանիմէկէն 25ի բարձրացնել իր զօրաբաժիններուն թիւը: Ալպանիա ունի 3—4 զօրաբաժին եւ կրնայ բարձրացնել 6—7ի: Ռումանիա ունի 260.000 զինուոր, Հունգարիա՝ 270.000, եւ կրնայ հանել մինչեւ 25 զօրաբաժին: Միւս կողմէ տասը ռուսական զօրաբաժիններ կը գտնուին Աւստրիոյ, Հունգարիոյ եւ Ռումանիոյ մէջ :

Մարեշալը հաշուեց նաեւ երեք բարեկամ երկիրներուն բանակները: Յունաստան ունի 143.000 զինուոր, Թուրքիա 21 զօրաբաժին եւ վեց անկախ կիսաբաժին, այսինքն 350.000 զինուոր : Թուրքերը արդէն իսկ Թրակիոյ մէջ համախմբած են 70 հազար զինուոր : Եուկոսլաւիա ունի 29 զօրաբաժին կամ 450 հազար զինուոր :

### ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ԵԳԻՊՏՈՍԷՆ հասած վերջին լուրերը կ'ըսեն թէ մեծ գործունէութիւն կը տիրէ Գահիրէի մէջ: Զինուորական ղեկավարութիւնը եւ նախարարական խորհուրդը խառն ժողովներ կը գումարեն շոգեպինդ, երկու շաբաթէ ի վեր : Կը քննուին ներքին եւ արտաքին քաղաքականութեան բոլոր մանրամասնութիւնները: Այս առթիւ կառավարութեան ներկայացուցիչը պնդեց թէ Եգիպտոս պիտի պահանջէ որ Անգլիա Սուէզի շրջանը պարպէ առանց որեւէ պայմանի: Եգիպտոս կ'ուզէ որ Միջին Արեւելքի աշտպանութեան համար շրջանային դաշինք մը կնքուի ոչ թէ Անգլիոյ, այլ արաբական երկիրներու ղեկավարութեամբ: — Մ. Նահանգները կը փորձեն միջնորդի դեր կատարել, որպէսզի կացութիւնը աւելի չբարդանայ :

ԻՍՐԱՅԷԼԻ խորհրդարանը յառաջիկայ շաբթու պիտի քննէ բացառիկ օրէնք մը, որ կը արամադրէ յիշատակարաններ կանգնել հիթլերական իշխանութեան վեց միլիոն զոհերուն համար եւ զանոնք նկատել «յիշատակի քաղաքացիներ» — տեսակ մը պատուական տիտղոս, որ նորութիւն է :

## Ցերեկոյթ - պարահանդէս

ԱՆԿԷՆԻ ՄԷՋ

Կազմակերպուած Կապոյտ Խաչի Անկէնի մասնաճիւղի կողմէ, այս կիրակի 22 Մարտ, ժամը 16էն մինչեւ կէս գիշեր, քաղաքապետարանի սրահին մէջ, 30 rue de la Libération :

Կը խօսի Տիկին ԷԼԼԷՆ ԲԻՒԶԱՆԴ

## Ընկերահամակրական խնջոյք

Հ. Յ. Դ. «Աղբիւր Սերոբ - Եօթնեղբայրեան» խումբի :

Կիրակի 22 Մարտ, ժամը 3էն մինչեւ կէս գիշեր, Սալ Bains - Doucheի մէջ, Իվրի :

Գեղարուեստական ճոխ անակնկալներ, երգ, արտասանութիւն եւն.: Դիւրամատչելի պիւֆէ :

Մուտքը ազատ է

ԹԱՏԵՐԱԿԱՆ ԲԱՑԱՌԻԿ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ
ՍԱԼ տ'ԻԷՆԱ, 10 Ավընիւ տ'Իէնա
Մէթրօ Իէնա

Երկուշաբթի 23 Մարտ ժամը 20,30ին Դերասան Աւետիս ՄԻՍԻՐԵԱՆ կը ներկայացնէ

« Քօրրասօ »

կամ՝ «Ոճրագործին ընտանիքը», տրամ 5 արար (Ճիագոմէթթի) :

## Տարեկան մեծ պարահանդէս

Ի նպաստ ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕԴԱՓՈԽՈՒԹԵԱՆ ԿԱՅԱՆԻՆ :

Նախաձեռնութեամբ Ֆ. Կապ. Խաչի Լիոնի մասնաճիւղի : 28 Մարտ, շաբաթ երեկոյ ժամը 9էն մինչեւ առաւօտ, Պէռիէ Միյէի շքեղ սրահներուն մէջ: 31 Փլաս Պէլքուր :

Հաճելի անակնկալներ.— Պալէ լէ Լիւսիօլ տը Լիոն խումբի կողմէ: Սպանիական ժող. պար Ա. լիքի եւ Օր. Լօլիթա Մորէոյի կողմէ :




Le Gérant : A. NERCESSIAN
Imprimerie DER-AGOPIAN,17 rue Damesme ,Paris(13)

նաւոր պատուիրակ մը ղրկէ Մոսկուա, Մալենքոֆը տեսնելու համար։ Այցելնհաուըր չուզեր սխալ քայլ մը առնել եւ կը նախընտրէ քիչ մըն ալ սպասել, տեսնելու համար թէ Մալենքով տրամադի՞ր է հրապարակ իջնելու որոշ առաջարկներով։ Այս առթիւ նշանակելի կը համարուի նաեւ Վիշինսկիի արագ վերադարձը Մոսկուա։ Փորձառու դիւանագէտներ կը կարծեն թէ մեծ դէպքեր կրնան պատահիլ։

Անգլիոյ մէջ ալ անձկութեամբ կը սպասեն դէպքերու ընթացքին։ Կարգ մը երեսփոխաններ կը պահանջեն որ Չըրչիլ նոր ձեռնարկ մը փորձէ, Երեք Մեծերը ժողովի հրաւիրելու համար. մանաւանդ որ Չինաստանի դիկտատորը, Մաօ Ցէ Թունկ Մոսկուա պիտի այցելէ յառաջիկայ ապրիլին։

X Մոսկուայի կառավարական պաշտօնաթերթը, «Իզվեստիա» խմբագրականով մը կը բացատրէ թէ Խ. Միութեան քաղաքականութիւնը անյեղլի պայքար մըն է նոր պատերազմի մը դէմ եւ կը ձգտի միջազգային գործակցութեան, ինչպէս եւ առեւտրական յարաբերութեանց զարգացման։ «Միայն ափ մը ռազմապաշտներ պատերազմ կ՚ուզեն ինչ որ հակառակ է աշխարհի ժողովուրդներուն մեծամասնութեան շահերուն։ Անոնք ամէնքն ալ խաղաղութիւն կ՚ուզեն»։

## Թիտոյի այցելութենէն ետք

Մառեշալ Թիթօ Լոնտոնէն մեկնած ատեն հեռագիր մը ուղղելով Չըրչիլի, գոհունակութիւն յայտնած է, տեսակցութեանց յաջողութեան համար։ Այս առթիւ կ՚ըսէ.— «Մասնաւոր գոհունակութեամբ կը յայտարարեմ թէ երկու երկիրներուն բարեկամութեան եւ գինակցութեան կապերը տեւական են եւ թէ ուս ուսի պիտի պաշտպանենք խաղաղութիւնը»։ Անգլիոյ թագուհին ալ նոյնիմաստ հեռագիր մը ստացած է Թիթոյէն։

Իրազեկ աղբիւրէ կը հաւաստեն թէ Թիթօ խոստացած է աւելի մեղմացնել երկրին կարգուսարքը եւ հաշտարար քաղաքականութեան մը հետեւիլ եկեղեցւոյ հանդէպ։ Հաւաքական հողագործութեան (կոլխոզ) քաղաքականութիւնն ալ պիտի մեղմանայ։ Պիտի մնան միայն անոնք որ յաջողած են։

X Հռոմ հասած լուրերու համաձայն, դաշինք մը կնքուած է Ռումանիոյ, Հունգարիոյ եւ Պուլկարիոյ միջեւ, ի պատասխան Եուկոսլաւիոյ, Յունաստանի եւ Թուրքիոյ միջեւ գոյացած համաձայնութեան։ Այս դաշինքը, որ կնքուած է գաղտնօրէն, Ռումանիոյ մէջ, կը պարունակէ հետեւեալ տրամադրութիւնները.—

1. Ռազմագիտական ծրագիր մը՝ մասնաւորապէս միացնելու համար ռումանական, հունգարական եւ պուլկարական բանակները.— 2. ռուս մառեշալ Կոնիեւը նշանակել ընդհ. հրամանատար միացեալ ուժերուն.— 3. Զօրաշարժի փորձ մը կատարել այս գարնան, երեք երկիրներուն 40 զօրաբաժինները բարձրացնելով «այնպիսի թիւի մը որ համապատասխանէ ներկայ կացութեան». 4.— Փութացնել երեք բանակներուն վերազինումը, արդիական հայթայթումներով (օդանաւ, թնդանօթ, հրասայլ եւն.).— 5. Ռուսերէն լեզուն հաստատել ընդհ. սպայակոյտներուն եւ հրամանատարութեանց մէջ, դիւրացնելու համար գործողութիւնները։

ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՉԵԽՈՍԼՈՎԱՔԻՈՅ նախագահ ընտրուեցաւ Զափոթոքի, որ 68 տարեկան է եւ վարչապետ էր 1948ի պետական հարուածէն ի վեր։ Նոր վարչապետն է Սիրոքի։ Նախագահին ընտրութիւնը կատարուեցաւ միաձայնութեամբ, տեւելով 15 վայրկեան։ Զափոթոքի ասպարէզ նետուած է իբրեւ դերձակի աշկերտ, երբ 16 տարեկան էր։ Սիրոքի առաջին Սլովաքն է որ վարչապետութեան կը կոչուի, գոհացում տալու համար 3500000 Սլովաքներուն (Չեխերը 9 միլիոն են.)։

ԵՐԿՐԱՇԱՐԺԻ նոր ցնցումներ զգացուեցան Թուրքիոյ աղէտեալ վայրերուն մէջ։ Մարդկային զոհ չկայ։ Թուրք թերթերը կը գրեն թէ մեռեալներուն թիւը չափազանցուած է։

ԱՆԳԼԻՈՅ արտաքին եւ ելմտական նախարարները երկար խորհրդակցութիւն մը ունեցան Պ. Պ. Մայէրի եւ Պինոյի հետ, որոնք Ուաշինկթըն կը մեկնին այսօր։

ԵՒՐՈՊԱԿԱՆ ԲԱՆԱԿԻ ԴԱՇՆԱԳՐԻՆ դէմ պայքարը կը շարունակուի Փարիզի մէջ, գրաւոր թէ բանաւոր։

ԼԻԲԱՆԱՆԻ կառավարութիւնը գրաւեց Ֆրանքօ-պելճիական ելեկտրական ընկերութիւնը (հանրակառք եւ լուսաւորութիւն), այն ամբաստանութեամբ թէ չէ յարգած իր յանձնառութիւնները։

ԱՄԵՐԻԿԵԱՆ ՍՈՒԶԱՆԱՒԻ մը 23 նաւաստիները ջուրին երեսը ելան առջի օր, երկու ամիս ամբարփակ նաւուն մէջ մնալէ ետք։ Փորձին նպատակն էր ստուգել թէ որքան ատեն կրնան ջուրին տակ մնալ։

## Մեծ պարահանդէս

Նախաձեռնութեամբ Հաճընի Հայր. Միութեան, մարտ 29ին ժամը 16էն մինչեւ կէս գիշեր։ Սէրքըլ Միլիթէրի շքեղ սրահներուն մէջ։ (Place St. Augustin)։
Յայտնի մեծ նուագախումբ Մ. Վարդիվառեանի
Գեղարուեստական ճոխ բաժին։

ՀՐԱՊԱՐԱԿԱՅԻՆ ԲԱՆԱԽՕՍՈՒԹԻՒՆ

Ցիշատակի օր մեր բոլոր նահատակ մտաւորականներու։
Կազմակերպուած՝ Համախարբերդի «Եփրատ» Միութեան կողմէ, Շաբաթ 28 Մարտ, երեկոյեան ժամը 21ին, Սալ Մազընոյի մէջ, 88 rue d'Aubagne
Կը նախագահէ ՎԵՐ. ՂԱԶԱՐՈՍԵԱՆ
Բացման խօսք Ա. ՔԷՕՍԷԵԱՆ
Կը խօսին պրոֆ. ԽԱՅԻԿԵԱՆ Պ. Մ. ՊԱՐՍԱՄԵԱՆ եւ Պ. Մ. ՄԻՐՋԷ։
Գեղարուեստական խնամուած բաժին։ Նուագ յայտնի ջութակահար Պ. Լ. Ղեւոնդեան, երգ Օր. Արզումանեան եւ Պ. Գ. Ստեփանեան, արտասանութիւն Պ. Թուքլեան։
Յաջորդ օրը կիրակի 29 Մարտ, իրիկունը ժամը 9ին «Քաֆէ Նօայ»ի (La Canebière) սրահին մէջ, տեղի պիտի ունենայ թէյասեղան մը, ի պատիւ Պ. Պարսամեանի եւ Մ. Միրզէի։ Պիտի դասախօսէ Պ. Պարսամեան։
Կը հրաւիրուին բոլոր հայրենակիցները անխտիր։

## Տարեկան մեծ պարահանդէս

Ի նպաստ ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕԴԱՓՈԽՈՒԹԵԱՆ ԿԱՅԱՆԻՆ։
Նախաձեռնութեամբ Ֆ. Կապ. Խաչի Լիոնի մասնաճիւղի։ 28 Մարտ, շաբաթ երեկոյ ժամը 9էն մինչեւ առաւօտ, Պէոլէ Միյէի շքեղ սրահներուն մէջ։ 31 Փլաս Պէլքուր։
Հաճելի անակնկալներ.— Պալէ լէ Լիւսիօլ տը Լիոն խումբի կողմէ։ Սպանիական ժող. պար Ալիքի եւ Օր. Լօլիթա Մորէոյի կողմէ։

ՆՈՒԷՐՆԵՐ, ՄԱՐՍԷՅԼ.— Ֆ. Կ. Խաչի Պոմոնի մասնաճիւղը ստացած է Տիկին Պէզիրճեանէ 500 Ֆր. իր եղբօր Մելիք Գրիգորեանի դառնակսկիծ մահուան առթիւ։

ԿՐԸՆՕՊԼԸ.— Ֆ. Կ. Խաչի մասնաճիւղը շնորհակալութեամբ ստացած է 5000 Ֆրանք Տէր եւ Տիկին Տիգ. Սահակեանէ, իրենց զաւկին Օր. Սահակեանի ամուսնութեան առթիւ։





## ՅՈՒՇԱՏԵՏՐ

Հ. Յ. Դ. ՐԱՖՖԻ խումբին ընդհ. ժողովը այս հինգշաբթի ժամը 20.45ին։ Նոր էմփրէս, 27 րիւ տը Տէօնֆէրֆ։

ՎԱՍՊՈՒՐԱԿԱՆԻ Հայր. Միութեան ընդհ. ժողովը այս ուրբաթ ժամը 20.30ին, 12 րիւ Քատէ։ Բոլոր անդամները կը հրաւիրուին, անդամատետրերով։

ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆԻՆ շաբաթական հաւաքոյթը այս Չորեքշաբթի երեկոյ, ժամը 9ին, Քատէ սրճարանին վերնայարկը։ Պիտի խօսի Պոլսահայ լրագրող Պ. ՄԿՐՏԻՉ ՀԱՃԵԱՆ, նիւթ ունենալով «Արուեստներու հիմնական սկզբունքները»։ Մուտքը ազատ է։

ՍԿԱՈՒՏԱԿԱՆ ՀԱՆԴԷՍ ԽՆՋՈՅՔ
Նախաձեռնութեամբ Հայ Արենոյշներու Միութեան Փարիզի շրջանին։
Կիրակի, Ապրիլ 19ին, ժամը 15ին։

« ԱԶԱՏ ՀԱՅԱՍՏԱՆ »
«Ազատ Հայաստան»ը, որ Ֆրանսաբնակ վերջին հայ տարագիրներու միակ եւ օրինական կազմակերպութիւնն է՝ արտօնուած պետութեան կողմէ, Փարիզի մէջ կազմակերպած է երգի, պարի եւ սուլիսի խմբակներ։
Վայրը եւ ժամը պիտի ծանուցուին առանձին, Ամէն կարգի դիմումներու համար գրել Պ. Գորեանի, 155 Ավընիւ Ժան Ժօրէս, Առնուվիլ լէ Կոնէս (Սէն է Ուազ)։








Le Gérant : A. NERCESSIAN
Imprimerie DER-AGOPIAN, 17 rue Damesme, Paris (13)

## Եուկոսլաւիա վաւերացուց դաշինքը

Եուկոսլաւիոյ Ազգ. ժողովը մարտ 23ին վաւերացուց Յունաստանի եւ Թուրքիոյ հետ կնքուած դաշինքը։ Բոլոր երեսփոխաններըմիաձայն ծափահարեցին վաւերացումը։ Այս առթիւ ճառ մը խօսելով, փոխ – վարչապետը՝ Քարտել, որ միեւնոյն ատեն Թիթոյի փոխանորդն է, յայտարարեց թէ երրեակ համաձայնութիւնը կը կազմէ.

Ա.— Կարեւոր համաձայնութիւն մը Եուկոսլաւիոյ եւ միւս երկիրներուն անկախութեան ամրապնդման, ինչպէս եւ Պալքաններու խաղաղութեան համար ։

Բ.— Համաձայնութիւնը կը զօրացնէ երեք երկիրներուն դիրքը միջազգային յարաբերութեանց մէջ ։

Գ.— Համաձայնութիւնը հիմնուած է իրաւունքներու կատարեալ հաւասարութեան վրայ եւ թոյլ չի տար միջամտել ներքին գործերուն ։

Դ.— Այս համաձայնութեամբ կը հաստատուի թէ կարելի է արդիւնաւոր գործակցութիւն մը հաստատել տարբեր վարչակարգով երկիրներու միջեւ ։

Փոխ - վարչապետը բացատրեց թէ այս առաջին դաշնագիրն է որ կը կնքէ Եուկոսլաւիա, Մոսկուայի հետ խզուելէ ետք։ Ցետոյ ըսաւ. — «Կը կարծեմ թէ պալքանեան երեք երկիրներուն համաձայնութիւնը, ինչպէս եւ մառեշալ Թիթոյի այցելութիւնը Լոնտոն՝ երկու յաջող ձեռնարկներ են։ Եուկոսլաւիոյ միջազգային դիրքը ամուր է աւելի քան երբեք։ Այս համաձայնութիւնը բաց է ուրիշ երկիրներու, մասնաւորապէս Իտալիոյ առջեւ ։ Կը կարծեմ թէ իրատեսութեան ոգին ի վերջոյ պիտի յաղթէ իտալական քաղաքականութեան մէջ։ Միւս կողմէ, մենք պատրաստ ենք գործակցելու Իտալիոյ հետ, այն խնդիրներու մասին որոնք վճռական են այսօր խաղաղութեան պահպանման եւ Եուկոսլաւիոյ ու Իտալիոյ անկախութեան համար, բայց ոչ ի գին մեր ազգային շահերուն »։

Եզրակացնելով, փոխ - վարչապետը յայտարարեց թէ Եուկոսլաւիա մէկ բան կը պահանջէ խորհրդային ճակատէն,— հանդիստ ձգել եւ յարգել իր սահմանները։

---

### ՓԱՐԻԶԻ ՀԱՅՈՑ ԵԿԵՂԵՑԻԷՆ

Փարիզի Հայ. եկեղեցւոյ հոգաբարձութիւնը կը հրաւիրէ ժողովուրդը ներկայ ըլլալ հետեւեալ արարողութիւններուն.— այս ուրբաթ առաւօտ վերջին Արեւագալ ժամը 9ին, իսկ երեկոյեան ժամը 4.30ին «Խաղաղական եւ Հսկում» ։

Իսկ կիրակի Ծաղկազարդ, հանդիսաւոր քառաձայն Ս. պատարագ, ժամը 10ին, ղեկավարութեամբ՝ Պ. Արա ՊԱՐԹԵՒԵԱՆի։ Նոյն օրը երեկոյեան «Դռնբացէք» ժամը 4.30էն։

---

ՄԻ՛ ՄՈՌՆԱՔ

### ՀՈՎԱՆԱՒՈՐՈՒԹԵԱՄԲ Զ. Ռ. ՄԻՈՒԹԵԱՆ ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ԵՐԵԿՈՅԹԸ

Ի պատիւ ՀԱՅ - ԲՈՅԺի խմբագրին Մայիս 16ին, Շաբաթ երեկոյ, Թէաթրը տ՛Իէնայի մէջ, Հայ տաղանդաւոր բեմադրիչը՝ ԱՇՈՏ ՄԱԼԱՔԵԱՆ պիտի ներկայացնէ իր Ֆիլմերէն մին։ Հանդէսին պիտի մասնակցին նաեւ երկու Ֆրանսացի արուեստագիտուհիներ ։

Մանրամասնութիւնները յառաջիկային ։

---

Պ. Յակոբ Գալուստեան (Ամերիկա), Տէր եւ Տիկին Ալիքսան Գալուստեան եւ զաւակները (Ամերիկա), Պ. Ենովք Գալուստեան (Ամերիկա), Պ. Գրիգոր Տերվանեան (Ամերիկա), Տէր եւ Տիկին Պօղոս Տերվանեան (Ամերիկա), Պ. Յովսէփ Գալուստեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Պաղտասար Արզումանեան եւ զաւակը, Այրի Տիկ. Մարգարիտ Արզումանեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Խաչատուր Արզումանեան եւ զաւակները խորին ցաւով կը յայտնեն իրենց տիկնոջ, մօր, քրոջ, հօրաքրոջ, մեծ մօր՝

ՏԻԿԻՆ ԼՈՒՍԻԿ ԳԱԼՈՒՍՏԵԱՆԻ

մահը որ տեղի ունեցաւ Մարտ 20ին Նէօյլիի ամերիկեան հիւանդանոցին մէջ։

Թաղման արարողութիւնը պիտի կատարուի հինգշաբթի առաւօտ ժամը 11ին։ Հաւաքուիլ Իսիի գերեզմանատունը ։

Մասնաւոր մահազդ չստացողներէն կը խնդրուի ներկայս իբր այն նկատել ։

---

ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ.— Համախարբերդի Միութեան Մարսէյլի մասնաճիւղը իր խորին ցաւակցութիւնը կը յայտնէ Այրի Տիկ. Թամամ Սահակեանի մահուան առթիւ հայրենակից Տէր եւ Տիկ. Սահակեանի եւ իր որդւոյն Սամուէլի, նաեւ Այրի Տիկին Մարիամ եւ որդւոյն Սարգիս Պիւլպիւլեանի եւ բոլոր պարագաներուն ։

## Մեծ պարահանդէս

Նախաձեռնութեամբ Հաճընի Հայր. Միութեան, մարտ 29էն ժամը 16էն մինչեւ կէս գիշեր։ Սէրքլը Միլիթէրի շքեղ սրահներուն մէջ ։ (Place St. Augustin) :

Յայտնի մեծ նուագախումբ Մ. Վարդիվառեանի

Գեղարուեստական ճոխ բաժին ։

Ժաքի Շառլ՝ ռատիոյի սփիքըրը պիտի ներկայացնէ բոլոր արուեստագէտները.—

Բացի հայ արուեստագէտներէ իրենց սիրայօժար մասնակցութիւնը պիտի բերեն հետեւեալ հանրածանօթ արուեստագէտները.—

ANDRELYS- Imitateur Bobino. ALLUZI FRANK ténor de la radio. D'ARCY BOB - Fantaisiste. BOTERRY SOFIA - Chant Russe - Cabarets Parisien. DARMONT - Charme. DURETTI RENÉE - Gaité Lyrique. O'GFAVIL - Comique troupier. GERARD ANNIE - Réaliste cabarets parisisns. FERRARI CARLO - de la radio. MONTANA - Attraction inter. Jeu de corde et au lasso.

Հրաւիրատոմսերու համար դիմել. — Պ. Գ. Տէմուլեան, Թէլ. Def. 25-07 :

Պ. Մ. Գրանեանին՝ –կրճծ

138, Rue l'Abbé - Groult Paris 15e.

---

### ՀՐԱՊԱՐԱԿԱՅԻՆ ԲԱՆԱԽՕՍՈՒԹԻՒՆ

Ցիշատակի օր մեր բոլոր նահատակ մտաւորականներու ։

Կազմակերպուած՝ Համախարբերդի « Եփրատ » Միութեան կողմէ, Շաբաթ 28 Մարտ, երեկոյեան ժամը 21ին, Սալ Մազընոյի մէջ, 88 rue d'Aubagne.

Կը նախագահէ ՎԵՐ. ՂԱԶԱՐՈՍԵԱՆ

Բացման խօսք Ա. ՔԷՕՍԷԵԱՆ

Կը խօսին պրոֆ. ԽԱՅԻԿԵԱՆ Պ. Մ. ՊԱՐՍԱՄԵԱՆ եւ Պ. Մ. ՄԻՐՁԷ ։

Գեղարուեստական խնամուած բաժին։ Նուագ յայտնի ջութակահար Պ. Լ. Ղեւոնդեան, երգ Օր. Արզումանեան եւ Պ. Գ. Ստեփանեան, արտասանութիւն Պ. Թուքլեան ։

Յաջորդ օրը կիրակի 29 Մարտ, իրիկունը ժամը 9ին «Քաֆէ Նօայ»ի (La Canebière) սրահին մէջ, տեղի պիտի ունենայ թէյասեղան մը, ի պատիւ Պ. Պարսամեանի եւ Մ. Միրզէի։ Պիտի դասախօսէ Պ. Պարսամեան ։

Կը հրաւիրուին բոլոր հայրենակիցները անխտիր ։

---

ՄԻ՛ ՄՈՌՆԱՔ

### ՎԱՆԻ ՀԵՐՈՍԱՄԱՐՏԻՆ ՏԱՐԵԴԱՐՁԸ

Մայիս 24ին, Կիրակի, Մարսէյլի մէջ

---



## ՑՈՒՑԱՏԵՏՐ

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Փարիզի «Ահարոնեան» խումբի վիճաբանական ժողովը՝ այս հինգշաբթի ժամը 21.30ին Ազգ. Տան մէջ, 32 րիւ տը Թրէվիզ, մէթրօ Քատէ։ Նիւթ. Զարեանի « Տատրակոմի հարսը»։ Բոլոր ներկաները կրնան թեր կամ դէմ արտայայտուիլ ։ Հայերէնի դասաւանդութիւնը ժամը 20.15ին։

Հ. Յ. Դ. ՐԱՖՖԻ խումբին ընդհ. ժողովը այս հինգշաբթի ժամը 20.45ին։ Նոր Էճափրէս, 27 րիւ տը Տէօնֆէրք ։

ՎԱՍՊՈՒՐԱԿԱՆԻ Հայր. Միութեան ընդհ. ժողովը այս ուրբաթ ժամը 20.30ին, 12 րիւ Քատէ։ Բոլոր անդամները կը հրաւիրուին, անդամատետրերով ։

ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆԻՆ շաբաթական հաւաքոյթը այս Չորեքշաբթի երեկոյ, ժամը 9ին, Քատէ սրճարանին վերնայարկը։ Պիտի խօսի Պոլսահայ լրագրող Պ. ՄԿՐՏԻՉ ՀԱՃԵԱՆ, նիւթ ունենալով «Արուեստներու հիմնական սկզբունքները»։ Մուտքը ազատ է ։

---

### ՍԿԱՈՒՏԱԿԱՆ ՀԱՆԴԷՍ ԽՆՋՈՅՔ

Նախաձեռնութեամբ Հայ Արենոյշներու Միութեան Փարիզի շրջանին։

Կիրակի, Ապրիլ 19ին, ժամը 15ին ։

---

ՄԱՄՈՒԼԻ ՏԱԿ Է

### ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԱՄՍԱԹԵՐԹ ԲԺՇԿՈՒԹԵԱՆ

Խմբագիր՝ Շ. ՆԱՐԴՈՒՆԻ

13րդ տարի, ՅՈՒՆՈՒԱՐ – ՓԵՏՐՈՒԱՐ (32 էջ)։

---



Le Gérant : A. NERCESSIAN
Imprimerie DER-AGOPIAN, 17 rue Damesme, Paris (13)

Խ. ՄԻՈՒԹԻՒՆԸ նորէն մերժեց դաշնակիցնե - րուն եւ Աւստրիոյ առաջարկը՝ աւստրիական ա - ռեւտրական օդատորմիղի մը հաստատման մա - սին :

ԹՈՒՐՔԻ ՎԵՐԱԴԱՐՁԸ կը հաստատուի պաշտօնա- պէս : Երէկ «Լըմանիթէ»ն ալ բարի գալուստ կը մաղթէր : — Թորէզ Մոսկուա փոխադրուեցաւ 1950 Նոյեմբերին, դարմանուելու համար : Նոյն տարուան Հոկտեմբերին կաթուած ունեցած էր աջ թեւին վրայ : Անկէ ի վեր հակասական լուրեր կը շրջին իր առողջական վիճակի մասին : Կ'ըսուի թէ Փարիզ կուգայ լուծելու համար կուսակցու - թեան մէջ ծագած վէճերը :

ՉԵԽՈՍԼՈՎԱՔԻԱ պահանջեց «անմիջապէս » վերադարձնել այն չեխական օդանաւը եւ «աճա - բեկիչները» որոնք Ֆրանքֆորթ իջած էին Բչ․օր :

ԱԼԿԱՍԻՐԻՈ զին. ատեանը մահուան դատա - պարտեց երկու հոգի, երբեւ լրտես, իսկ հինգ ամբաստանեալներ ալ՝ 12-25 տարի բանտարկու - թեան :

ՎԵՐՋԻՆ ԶԵՐԲԱԿԱԼՈՒԹԵԱՆՑ դէմ ցոյցերը կը շարունակուին Փարիզի եւ գաւառի մէջ, առաջ- նորդութեամբ Աշխատանքի Դաշնակցութեան եւ Կեդր. Կոմիտէի : Աշխատանքի դադարումները յաճախադէպ են մասնաւորապէս գաւառի մէջ : Թերթերը կը գրեն թէ ուրբաթ օր Մարսէյլի մէջ աշխատանքը դադրեցաւ 50 առ հարիւր համեմա- տութեամբ :

ՄԵԾ ՊԱՆԴՈԿՆԵՐՈՒ աշխատաւորներու գոր- ծադուլը դեռ չէ դադրած : Կը վախցուի որ ծա - ւալի :

200 ՀՈԳԻ ՁԵՐԲԱԿԱԼՈՒԵՑԱՆ Քենիայի մէջ (արե- ւելեան Ափրիկէ), Մաու - Մաու կոչուած վայրե- նիներու կողմէ : Անգլ. իշխանութիւնը արտա - կարգ միջոցներ ձեռք առաւ :

ՔՈՐԷԱՅԷՆ կը հեռագրեն թէ կարմիրներու ճնշումը կը սաստկանայ : Դաշնակիցները նոր յար- ձակողականի մը կը սպասեն :

ԼԵՀԱՍՏԱՆԻ զին. ատեանին ընդհ. դատա - խազը մահապատիժ պահանջեց հինգ Լեհերու դէմ, այն ամբաստանութեամբ թէ լրտեսութիւն կատարած են ի հաշիւ Մ. Նահանգներուն :

ԱՐԵՒԵԼԵԱՆ ԳԵՐՄԱՆԻՈՅ մէջ ձերբակալ - ուեցան «խումբ մը լրտեսներ » այն ամբաստանու- թեամբ թէ Ցայս գործարանին գաղտնիքները հա- ղորդած են Ամերիկացիներուն : Կ'ըսուի թէ 25 հոգի ձերբակալուած են :

ԱՀԱՒՈՐ ՀՐԴԵՀ ՄԸ ոչնչացուց Կրընոպլի խողովակի ամենամեծ գործարանը : Վնասը՝ 50 միլիոն ֆրանք :

ՉՈՐՍ ԿԻՆԵՐՈՒ ԴԻԱԿՆԵՐ գտնուեցան Անգ - լիոյ մէջ, տան մը նկուղներուն մէջ : Հինգերորդ զոհ մըն ալ կը փնտռուին : Մարդասպանը փախած :

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Այրի Տիկին Ազնիւ Տէրոյեան կը ծանուցանէ թէ այս կիրակի առաւօտ, Փարիզի Հայոց եկե - ղեցիին մէջ, հոգեհանգստեան պաշտօն պատա - րագ պիտի կատարուի իր ամուսնոյն Պ. ՏԻԳՐԱՆ ՏԷՐՈՅԵԱՆի մահուան տարելիցին առթիւ : Կը հրաւիրուին իր յիշատակը յարգողները :

## ԽՆՋՈՅՔ - ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

Կազմակերպուած Համա - Զարսանճագի Հայր. Միութեան կողմէ, Զատկուան տօնին առ- թիւ, Ապրիլ 6ին, երկուշաբթի կէսօրէ վերջ ժա- մը 2ին, մինչեւ երեկոյեան ժամը 10, րիւ Պօն - փուա, Ցոյներուն սրահին մէջ :

Գեղարուեստական ճոխ բաժին, երգ, արտա - սանութիւն եւ անակնկալներ, հայկ. եւ եւրոպ. պարեր եւ նուագ : Նոր ժամանած երգապնակներ : ճոխ եւ աժան պիւֆէ : Մուտքը ազատ է :



## ՃԱՄԲՈՐԴՈՒԹԻՒՆ



## Ապրիլ 11-24-ը Մարսէյլի մէջ

Նախաձեռնութեամբ Ազգ. Կեդր. Վարչութեան եւ հովանաւորութեամբ երեք յարանուանու - թիւններու : 26 Ապրիլ, կիրակի ժամը 14.30ին, Քազա տ'Իթալիի մէջ :

Մասնակցութեամբ Արմէնիա երգչախումբի, Հ. Բ. Ը. Մ., Երիտ. Միութեան, Հ. Մ. Ը. Մ.ի, Հ. Ց. Դ. Նոր Սերունդի, Արծիւ Մարզական Մի- ութեան, Հ. Կ. Խաչի, Հայ Արիներու եւ արե - նուշներու, Հայ Ռազմիկներու Միութեան, Հա - մազգային Միութեան եւ բոլոր Հայր. Միու - թեանց :

## Մարսէյլի Հ. Մ. Ը. Մ.-ի

### ԳԱՐՆԱՆ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

Կիրակի 5 Ապրիլ, իրիկուան ժամը 9էն մին- չեւ լոյս, Վամփինկի շքեղ սրահներուն մէջ :

Նուագախումբ ՓՈԼ ՄՕՐԻՍ : Անակնկալներ, Տէֆիլէ տը մանըքէն, քոթիյոն :

Ապահովել սեղանները : Երեկոյթի զգեստ յանձնարարելի է :

### ԶԱՏԻԿԸ ՊՈՄՈՆԻ ՄԷՋ (ՄԱՐՍԷՅԼ)

(Ս. Լուսաւորիչ եկեղեցի), Այս կիրակի՝ Ծաղկազարդ, սկիզբ առաւօտեան ժամերգութեան ի ժամ 7.30, պատարագ ժամը 10, Դռնբացէք ժա- մը 5 : Աւագ Հինգշաբթի . ՑԻՇԱՏԱԿ ԸՆԹՐԵԱՑ պատարագ ժամը 10, Հաղորդութիւն բոլոր ման - կանց, Ոտնլուայ ժամը 5, գիշերը «Խաւարում» ժամը 7.30, Աւագ Ուրբաթ՝ Կարգ Թաղման ժամը 5, Աւագ շաբաթ՝ Ճրագալոյց Ս. Զատիկ, Խթման արարողութիւն ժամը 4.30, Պատարագ եւ Նախա- տօնակ ժամը 6 : 5 Ապրիլ Կիրակի՝ Տօն Յարու - թեան, Հանդիսաւոր Ս. Պատարագ ժամը 10, Երկուշաբթի՝ Յիշատակ Մեռելոց ժամը 8, Պա - տարագ 10, Հոգեհանգիստ 11.45 : 12 Ապրիլ՝ Յի- շատակ մէկ միլիոն նահատակներու :



ԾԱԽՈՒ Է, «Հայրենիք» ամսագրին 1952ի հաւաքածոն, մաքուր վիճակի մէջ : Գին՝ 1200 ֆրանք, ճամբու ծախքը ղրկողին վրայ : Գրել «Յառաջ»ի :



# ՅՈՒՇԱՏԵՏՐ

ՓԱՐԻԶ .— Հ. Յ. Դ. «Փոթորիկ »խումբի ժողո- վը՝ այս երեքշաբթի ժամը ճիշդ 2ին, Քաֆէ Լը Ռէժան (մէթրօ Քատէ) : Շատ կարեւոր օրակարգ : Պարտաւորիչ ներկայութիւն :

ԸՆԿԵՐ Ց. ՀԻՍԱՅԵԱՆ ստիպողաբար խմբագրա- տուն կը հրաւիրուի երկուշաբթի օր :

## ԽՆՋՈՅՔ ԿԱՐՏԱՆԻ ՄԷՋ

Համախմբ. Միութեան Կարտանի մասնա - ճիւղի հաւկթախաղ խնջոյքը, 4 Ապրիլ, Շաբաթ երեկոյ ժամը 9ին, Կարտանի հայկ. դպրոցին մէջ : Կերուխում, երգ, պար, հաճելի անակնկալներ եւ Խարբերդի խմբապարը (Հալէյ) : Մուտքը ազատ է :

## Մեծ պարահանդէս

Նախաձեռնութեամբ Հաճընի Հայր. Միու - թեան, մարտ 29ին ժամը 16էն մինչեւ կէս գի- շեր : Սէրքըլ Միլիթէրի շքեղ սրահներուն մէջ : (Place St. Augustin) :

Յայտնի մեծ նուագախումբ Մ. Վարդիվանեանի Գեղարուեստական ճոխ բաժին :

Հրաւիրատոմսերու համար դիմել. — Պ. Գ. Տէմուլեան, Թէլ. Def. 25-07 :

Պ. Մ. Գրանեանին՝

138, Rue l'Abbé - Groult Paris 15e.



## Կ'ուզուի

Վիլ - ժուիֆի մէջ աշխատելու համար կօ - շիկի մօնթէօր եւ ֆինիսէօր գործաւորներ կ'ուզ - ուին (մօնթաժը 500 ֆրանքի, ֆինիսաժը 300 ֆը - րանքի : Դիմել Պ. Վանլեանի կէսօրէ վերջերը (բացի երկուշաբթիէ եւ չորեքշաբթիէ՝

7 rue Godot de Mauroy, Paris (IX) Métro Opéra
Tél. OPE 01 - 08

×

Երիտասարդ տղայ մը 15-17 տարեկան, որ կօշիկի գործի մէջ աշխատած ըլլայ արդէն : Դիմել՝ 18 Rue Mélingue, Paris :

**Le Gérant : A. NERCESSIAN**
Imprimerie DER-AGOPIAN, 17 rue Damesme, Paris (13)

